# ԱԲՐԱՀԱՄ

# ՄԱՄԻԿՈՆԷԻՑ ԵՊԻՍԿՈՊՈՍ

ԵՒ ԻՒՐ

ԱՌ ՎԱՉԱԳԱՆ ԳՐԱԾ ԹՈՒՂԹՆ

ՀՐԱՏԱՐԱԿԵՑ

Հ. ԲԱՐՍԵՂ Վ. ՍԱՐԳԻՍԵԱՆ

ՈՒԽՏԷՆ ՄԽԻԹԱՐԱՅ







ՎԵՆԵՏԻԿ
Ի ՏՊԱՐԱՆԻ Ս. ՂԱԶԱՐՈՒ
1899

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

ԱՄՍՕՐԵԱՑ ՀԱՆԴԻՍԻ մէջ եղած կրկին յայտարարութեանց համեմատ՝ մինչդեռ կը սպասէինք Ա. Կարիերի՝ Մարաբաս Կատինայի մասին ըրած նոր գիւտի հրատարակութեամբ տալիք վերջնական պատասխանւոյ մի, ահա յանկարծ ասպարէզ ելաւ Նորայր Բիւզանդացի, որ հաստատելով իր լաւութեան հետ՝ նաեւ Հայ Հերոդոտոսի թեր ու դէմ գրողներու բանակը, իր մէկ գրչի հարուածով ուզեց կորզել յաղթութեան դափնեպսակը, երբոր այն թէ այլք դեռ բան մ'ըրած չըլլային: Գուցէ շատեր տեսնելով նորա առած այս քայլը, յաջողութիւնն իսկ կա[illegible]արեալ համարեցան: Բայց որոնք գիտէին քաջ, թէ Խորենացւոյ պատմագրութեան դէմ յարուցուած խնդիրներն ինչպիսի՞ դժուարալոյծ գագաթնակէտի՝ իբրև անտեղիտալի ծայրի մը վրայ՝ եկած յանգած են այսօր, շնորհիւ խստապահանջ քննադատութեան, չէին տարակուսեր ըսել՝ որ ուշ կամ շուտ մեր քննադատն իսկ պիտի ստանակակէր այդ ծայրին դիմաց: Եւ յիրաւի, Մշակի 191, 193, 195, 206, 216 և 217 թիւերուն մէջ փոյթ ընդ փոյթ հրատարակած յօդուածներէն վերջ՝ կեցաւ նա, երբ հարկը կը ստիպէր զինքը լուծել Խորենացւոյ պատմութեան Գ գրքի ԿԷ գլխու հանգոյցը. այսինքն է՝ Ս. Մեսրոպայ ներբողն, որ նոյն է Սեղբեստրոսի վարուց մէջ՝ այդ հայրապետին յատկապէս ձօնուած ներբողին հետ, և Գալուստ Տէր-Մկրտչեանի և Գր. Խալաթեանի կարծիքով՝ Է դարում կատարուած անոր հայկական թարգմանութենէն փոխ առնուած է:

Այսպիսի հաստատհիմն ծայր մի փշրելու և դժուարելանելի կացութենէն ազատուելու համար երկու միջոցներ[1] հարկաւոր

1. Այս երկու կէտերը պաշտպանելու համար կան՝ ըստ իս՝ արտաքին փաստեր. բայց առ այժմ կը լռենք, մինչև որ Նորայր իր վերջին խօսքն ըսէ:

էին Նորայրին. այսինքն՝ կամ գտնել և ցոյց տալ ընդդիմանաբանից յիշեալ հատուածի յոյն կամ ասորի հնագոյն աղբիւրը, յորմէ կարող եղած լինէր օգտուիլ Մովսէս՝ Ե դարում, և կամ ապացուցանել, ընդհակառակն, թէ այդ նիւթըդ յետոյ ուրեմն անծանօթ ձեռքէ մի ներմուծուած է Խորենացւոյ պատմագրութեան յիշեալ գլխոյն մէջ։ Սակայն Նորայր՝ իւր ձեռքին ունեցած փաստերով գժուար է որ յաջողի յայսմ։ Մշակի 195 թուոյն մէջ շօշափելով այդ ծայրը, նա կը յայտարարէր, թէ «Զայս պիտի ցուցանեմ յաջորդօքն». բայց այդ յաջորդներուն մէջ մենք դեռ ուրիշ բան չտեսանք՝ բայց եթէ անոր Մեծ և Փոքր Սոկրատներու՝ Խորենացւոյ հետ եղած համեմատութիւններով զբաղիլն։ Միայն այս էջերս գրելէ վերջը՝ ծանօթացանք Մշակի 237 թուին մէջ լոյս տեսած հատուածին հետ, ուր, — ինչպէս ենթադրած էինք, — Նորայր առանց վերոյիշեալ երկու միջոցներուն, և միայն Խորենացւոյ բառական ինչ ինչ տարբերութիւնէն կ'եզրակացնէ, թէ Մ. Խորենացի ունեցած է Սեղբեստրոսի Վարուց յոյն բնագիր մի, և հաւանօրէն զայն թարգմանած իսկ. հետևաբար՝ Ե դարում կատարուած հայ թարգմանութիւնէն առած չէ։ Սակայն յետ այնչափ երկանց ծնած այդ փաստը թերեւս խիստ քննադատից աչքին ոչինչ երևի. քանի որ Նորայր ապացուցած չէ ուրիշ դրական փաստերով Ե դարու ոչ այդ յունարէն բնագրին և ոչ այլ անոր վրայէն Մովսէսի ձեռքով եղած հին թարգմանութեան գոյութիւնը։ Մենք գէթ առաջին կէտը ամենահաւանական ցոյց տուած էինք, Սեղբեստրոսի վարուց հրատարակութեան ներածութեան մէջ, և որոց մասին Նորայր լռած է իսպառ։ Նոյն իսկ այն բառերը, զորս Նորայր Խորենացիէն հնարուած և անկէ Փոքր Սոկրատին անցած կ'ենթադրէ, մի երկուքը կը գտնուին Սեղբեստրոսի վարուց մեզ ծանօթ լատիներէն հատուածի մի մէջ։ Փոքր Սոկրատի մէջ եղած ներբողն՝ այլ բոլորովին տարբեր է Խորենացւոյ ընծայուածէն, ուստի այդ մասին խօսելն իսկ աւելորդ էր, ուր մնաց բերել զայն իբրև զօրեղ փաստ։

Ի վերայ այսր ամենայնի պէտք է ըսել, որ Նորայր այդ յօդուածներուն աւելի ընդարձակ պարագաներով ապացուցուց գէթ, որ Փոքր Սոկրատայ խմբագրողն եղած է իրօք բանաքաղ[1] ինչպէս խումբ մի ուրիշ հեղինակութեանց՝ այս-

1. Այս տեսակէտով նշանակելի են Մշակի 206, 216, 247 թիւերն. իսկ նախընթացներն յաճախ կրկնութիւններ են ծանօթ իրաց։

պէս և Խորենացւոյ ուրիշ տեղերուն: Այս բանիս թերևս ուսեալք ցնցեն այսօր զՎարբէէր քան յառաջ. սակայն այդ եղանակը նոր չէ, այլ մեք իսկ բոլորովին իրմէ անկախ յղացած էինք յամին 1893, և այնու պաշտպանած[1] զառաջնութիւն Խորենացւոյ: Եթէ Ն. Բիւզանդացւոյ յաջորդաբար խօսելիքն եւ մինչև այսօր խօսածներուն և գրածներուն պէս միայն լեզուաբանական համեմատութիւններ պիտի պարունակէին, թէև լինին զօքս նոր, սակայն և այնպէս պիտի կարենան լուծել բոլոր այն պատմական, աշխարհագրական և ժամանակագրական դժուարութիւնները, զորս բարդեցին Գուտշմիդ և Կարրիէր, և Խալաթեանց քան զչափն բազմացոյց վերջերս՝ որոմնութեամբ: Դարձեալ, Փոքր Սոկրատով պիտի հլուծուի բնաւ Մեծ Սոկրատէն և Սեղբեստրոսէն ձեռնարկուած աշխարհին դժուարութիւնն, որուն առջև Տէր Մովսիսեան և Մալխասեան իսկ դեղեցան իրենց կարծեաց մէջ:

Դժուարութիւնը հարթելու տեղ՝ մի ուրիշ լեռ եւ իւր ձեռքով կը կանգնէ իւր դիմացը Նորայր, պնդելով որ Մեծ Սոկրատայ և Սեղբեստրոսի վարուց թարգմանութիւնքը՝ Փոքրէն շատ վերջ կատարուած լինին: Արդ, այսպէս ընդունելով, պարտ ու[illegible] ինչպէս մեկնել այն աւելի մեծ ծաւալ ունեցող նմանութիւնները, զորս ունի Խորենացին առանց հեռ, ինչպէս ցոյց կու տան Մովսէս Վ.ի ըրած համեմատութիւնքը. գիտելով մանաւանդ, որ սոցա թարգմանիչներն՝ Փոքր Սոկրատի խմբագրողին հակառակ՝ իրենց բնագրէն խոտորած և օտար բանաքաղութիւններ ըրած չեն, և թէ հայերէն թարգմանութեանց . ւաքնեթեր՝ յոյն բնագրերն իսկ իրենց բառացի նմանութիւններով կեցած են և կը խօսին, բարձրաձայն: Առոր վերայ յաւելցնելու է և՛ այս պարագայս, որ Նորայր ինքնին [illegible] հաստատ և որոշ համոզումն չունի[2], — և ոչ այլ

1 Տես ցեսութիւն Սեղբեստրոսի Պատմութիւնն, տպ. ի Վենետիկ 1893, երես ԼԶ–ԼԹ, և 15, 27, զոր գրած և ի պատրաստ ունէինք այն տարւոյ փետրուար ամսոյն մէջ. և նոյն տարւոյ Բազմավէպի Յունիս, Յուլիս և Օգոստոս ամիսները, ուր բաց ի Փոքր Սոկրատէն յոյն բնագիրն եւս համեմատած ենք Խորենացւոյ հետ, և մեր կարծիքն որոշակի յայտնած հակառակ Ա. Կարրիէրի ենթադրութեանց: Այս բանիս եթէ ծանօթ էր Նորայր, բաւ ինքեան պիտի չզոչէր հրապարակաւ, թէ «Ո՛չ ոք մինչ գրած այս պարագայիս». զի այդու ոչ առաջնութիւն կը վաստակուի և ոչ այլ պարծանք:

2. Տես Հանդէս ամսօրեայ 1893, Սեպտեմբեր ամիս էջ 278, ուր Յ. Գր. յաւելուածին մէջ այսպէս կը խօսի հեղինակն. «Չէ ինչ անհր-

ունեցածն ապացուցած է պատմական փաստերով, — Մեծ և Փոքր Սոկրատեներու, այնպէս և Մեղքեսարրաներու Հայկա-կան թարգմանութեանց մասին. այսինքն թէ՝ առանցմէ որո... են արդեօք երիցագոյնք ժամանակաւ: Հետեւաբար, ի յառա-ջագոյնն (a priori) մէջ բերուած փաստերն ի Փոքր Սոկրատ... անբաւական պիտի լինին ի ցրումն կարծեաց Խորենացւոյ ընդդիմախօսներուն, յորոց ոմանք այլ ընդ այլոյ բանիւ... յառաջագիմաց ամբողջ չեզէոքն իսկ իրենց կողմն երազեցի... երբեմն, մեղադրելով անասվար պահանջով մի գիտագրակեալը. թէ աւելի՞նչ կը պաշտպանէ զանպաշտպան ծերունին: Եր յուսանք — և մեզ հետ թերևս շատեր, — որ առանց ընդերկար հետա-թափանցելու՝ շուտով ելնէր Նորայր իւր այդ շրջանակէն՝ ըն-ձայելու նպատակին հասնելու համար: Իրաւ է, որ դժուար է, շատ դժուար, այդու կատարեալ յաջողութիւն և յաղթա-նակ կանգնել, 1899ին մէջ, հակառակորդաց դէմ. զի Խորենա-ցւոյ պայքարն 1900ին սահմաններն ալ պիտի անցնի: Սակայն գիտութեամբ և համոզումով գրուած ինչպէս ամէն մի նոր քննադատութիւն, այնպէս և Տէր Ն. Բիւզանդացւոյն՝ իւր տարբեր կողմերով հանդերձ՝ ունի նմանապէս լաւ յատկու-թիւններ, վերակազմելու Խորենացւոյ խանգարուած բնագի-րը[1], ուղղելու ընդդիմախօսից թիւր հասկացողութիւններն և նոր զարկ մի տալու անոր՝ ընթանալ դէպ ի յաղթութիւն:

Իրեն հետ մեք իսկ Վենետիկոյ Մխիթարեանք վաղուց ընդու-նած ենք Խորենացւոյ լեզուին հետ՝ նոյնպէս անոր խորհրդական ոգին և ազատ ներշնչութիւնքը, որոնք միայն Ե դարում աս-

նարին զի Փոքր Սոկրատն թարգմանեալ իցէ ի Փիլոնէ Տիրակացւոյ ի Է դարու, որպէս կարծեն բազումք, այլ յամին 671–676»:

1. Նորայրի այս մասին ըրած ջանքերն և տածած իղձերն յոյժ գո-վելի են, բայց և առ Մխիթարեանս ուղղուած զանգատանքն ոչ իրաւա-ցի. գիտելով որ վանուցս մատենադարանի սակաւութիւ և անկատար օրի-նակներով կարելի չէր յամին 1865 և 1841 հրատարակութիւններէն աւելի կատարեալ մ'ի լոյս ընծայել: Էջմիածնում միայն՝ ուր 20էն աւելի օրինակներ կան, հնար էր այնպիսի մի գործ կատարել: Գալուստ Տէր Մկրտչեան վերջերս հետամուտ էր այդ բանին, բայց չգիտեմ, թէ ինչ եղան նորա ուսումնասիրութիւնքը: Ազգային պատմագրութեան այսպիսի մի մեծ և կարևոր ծառայութիւն մատուցանելու համար գէթ՝ Նորայր իւրեն չէ՞ր կարող արդեօք տարի մի փոխանակել Ստոկհոլմի՝ Էջմիածնին անցընել: Թերևս նիւթական միջոցները չներեն Նորայրի ընել այսպիսի մի զոհ. իսկ Մխիթարեանք ապա ուրեմն ինչո՞ւ մեղա-դրուին՝ կրկին և կրկին անգամ ընելէն վերջ ըստ կարի:

տող և գրող մէկուն յատուկ են՝ ամենայն պարագայիւք, և ոչ էն Էջ կամ Ը դարուն, երբ արաբական տէրութիւնն ամեն-քին այլ ինչ խորհել կու տայր և գրել։ Բայց թէ այս ահն յայտ-նի եղելութեանս տարեթեր ինչպէս և ո՞ր անգութ ձեռքէն ներս պրծած են և օտար պարագայներ, դեռ չենք գիտեր։ Այո՛, կը ըմբռնենք և կ՚երեւակենք, թէ Խորենացի պատմագրի այս անքա-յատարելի ազդեցութիւնը մենք որչափ կը կարդանք՝ այնչափ աւելի կը զգանք, բայց չենք կրնար բացատրել և զգալի ընել այն տառերուն, որոց վրայ կարծէք թէ թանձր քող մի ձգուած է։ Իսկ ընդդիմաբանք՝ դժբաղդաբար չզգալով զայն, շատ իսկ և գրեցին և խօսեցան զանուղղայս, իրենց քմահաճոյից և ներշնչմանց համաձայն, որոց մինչև ցայսօր գործած խառնա-խօսութիւնքն և խայտառակ զառածանքը եթէ թուարկել ու-զէինք, անշուշտ դատափետուած Խորենացիէն շատ աւելի բազմաթիւ են և իմաստակական։ Այսպիսի քննադատու-թիւններու կեղծ ու պատիր կողմերը ցոյց տալու և Խորենա-ցւոյ իսկութիւնը վերայայտնելու անկողմնակալ նպատակաւ է, որ Թագմաղկեանը պաշտպանի դեր կատարեց և պիտի կատա-րէ՝ յաջ ու ձախ յարձակմանց դէմ, և ոչ եթէ կծու ազգասի-րութեամբ կամ ջոկ պահպանողական դրութեան արքանե-կելու համար, ինչպէս չարաճճի ձկտումներով ուզեցին հաւա-տացնել ոմանք՝ բազմաց։

Ուրախ ենք այսօր, որ Նորայրին հետ միաժամանակ Ստ. Մալխասեան ևս առեց իւր գրիչն և սկսաւ գրել Դաղբա-շեանի հերքումը, որ զարմանալի հակադրութեամբ մի Ե դա-րուս ապրող Մ. Խորենացիէն բոլորովին տարբեր մէկը գնելով հանդերձ իբր անծանօթ հեղինակ Հայոց պատմագրութեան, սակայն իւր բարկութեան նետերն ուղղեց դարձեալ յանձին Խորենայ նախիրական ծերոյն. և ա՛լ նախատական խօսք չմնաց որ չթափեր նորա գլխոյն, որոնք յետոյ Նոր դարի մէջ ամ-բողջ էջ մի գրաւեցին, ճարտար հաւաքողի մի ձեռքով։

Վերակացած է ուրեմն Խորենացւոյ խնդիրն. տեսնենք թէ յի՞նչ պիտի յանգի։ Ուստի մենք իսկ Տէր Նորայր Բիւզանդա-ցւոյն նպաստելու անկեղծ նպատակաւ է, և ոչ թէ ընդդիմա-բաններու, որ կը գրենք սոյն յօդուածը, նիւթ առնելով Ա-րահամ Մամիկոնէից եպիսկոպոսին՝ առ Վաչագան արքայ Ա-ղուանից գրած թուղթը, զոր ո՛չ Նորայր, — ըստ իւր իսկ խոս-տովանութեան, — քննած է, և ոչ այլ ոք ըստ արժանւոյն. բայց կը յիշէ իբրև մին՝ այնքան աղբերաց փոքր Սոկրա-տայ խմբագրութեան։ Իսկ թէ որքան ստոյգ է այս վարկածս,

և որչափ պիտի նպաստէ Խորենացւոյ դատին, այս քննութենէս յայտնի պիտի լինի։

Թուղթն, զոր Նոր Հայկզ. բառարանի յօրինողներէն ականաւոր ուրիշներ ևս ի մօտոյ ճանչցած և յիշած են, իբրև վաւերական գործ Ե դարում ապրող Մամիկոնէից եպիսկոպոսին, հին գրչագրաց մէջ կը կրէ հետևեալ խորագիրը՝ **Պատմութիւն վասն ժողովոյն Եփեսոսի որ եղև ի ժամանակս Թէոդոսի փոքու՝ վասն աղանդոյն Նեստորի**, մերթ Աբրահամ Մամիկոնեանի անուամբ մակագրուած է և մերթ այլ առանց անուան հեղինակի[1]։ Սակայն այս խորագրիս ներքև կը պարունակուի ուրիշ գրուած մ'ևս, այն է՝ դաւանութիւն Թէոդոսի թագաւորին, որ իւր նախորդ մասին հետ խիստ քիչ կամ ըստ ինքեան բնաւ յարմարութիւն չունի։ Տիեզերական ժողովոց **Պատմութեան**[2] հեղինակն՝ Հ. Գ. Յովսէփեան առաջին մասը միայն արտատպած է, վերջինոյն վերայ բնաւ խօսք չ'ընէր։ Նոյն կերպով յիշած է վերջերս և Հ. Յ. Տաշեան[3], որ յայտնի նշան է, թէ ինքն իսկ հանգոյն առաջնոյն վերջին մասի նկատմամբ նոր բան մի անդրադարձած չէ։ Իսկ Նորայր Բիւզանդացի՝ Նոր Հայկազեանն միայն անկէ հատուածներ կը ճանչնայ։ Եւ սակայն Սոկրատայ թարգմանութեան և Խորենացւոյ նկատմամբ ամենէն աւելի նորութիւն ընծայող և շահագրգռիչ մասն այս է. վասն զի բաղդատութեամբ ակներև տեսանք, որ սա ամբողջապէս Փոքր կոչուած Սոկրատայ թարգմանութեան հետ նոյն է, բայց այնպիսի նշանաւոր տարբերութիւններով, որոնք բարեբաղդաբար նոյնութենէն աւելի մի ուրիշ աւագ կարևորութիւն ունեցող եղելութեան ևս առհաւատչեայ են. այսինքն թէ, կամ Փոքր Սոկրատն այժմեանէն տարբեր հանգամանաց մէջ կը գտնուէր երբեմն, և կամ Աբրահամ՝ Սոկրատէն օգտուած ժամանակ՝ ձեռք խառնած է հատուածիս մէջ։ Գուցէ ոմանք առանց լաւ ուշ դնելու այս կէտերուս, նա մանաւանդ ի նկատի առնելով մի միայն Փոքր Սոկրատի հետ ունեցած նմանութիւնը, ըսեն թէ իրաւամբ ուրեմն կը կարծէր Նորայր, որ Սոկրատայ խմբագրողն Աբրահամու այդ թղթէն գողցած է Թէոդոսի ընդարձակ դաւանութիւնը։ Սակայն ես այլ պիտի ըսեմ

1. Օրինակ ինն, ԺԴ դարում գրուած մեր թիւ 1113 գրչագրին (Բ ճառընտրի) մէջ այսպէս է, և առանց Թէոդոսի դաւանութեան։
2. Տպեալ ի Վիեննա 1847, էջ 213–220։
3. Տես Մայր ցուց. հայկ. Ձեռագրաց, Վիեննա 1895, էջ 1051–2։

այսպիսեաց, կեցէք տեարք, որ քննադատութիւնս յառաջ վարեմ։

Արդ, նախ ի յառաջ Մշոյ Ս. Առաքելոց վանքի մեծ ճառընտրին մէջ՝ այս թուղթս ոչ միայն բոլորովին մի ուրիշ անձի, այն է Փիլոքսենոսի Նաբուգայ եպիսկոպոսի անուամբ մակագրուած է[1], այլ և իբր թէ ուղղեալ է առ Կոմիտաս կաթողիկոսն Հայոց, և տարբեր հանգամանք ունի. այսինքն է, վերջնոյս ներկայացուցած ընծայական յառաջաբանը՝ գլխովին կը պակսի Աբրահամու մակագրուածին մէջ, վերջաւորութիւնն այլ բոլորովին կը տարբերի։

Պատուելի Զամուրճեանի[2], Հ. Գ. Զարբհանալեանին[3] և Հ. Յ. Տաշեանին[4] ևս ծանօթ են այս պարագայք։ Հեղինակաց առաջնոյն հրատարակութիւնը չունէի ի ձեռին, նորա կարծիքն իմանալու համար. բայց երկրորդի կարծիքով՝ Աբրահամու թղթի նախկին աղբիւրն է Փիլոքսենոս, կամ լաւ ևս անոր ասորի բնագիրն. որովհետև Առաքելոց վանքի ճառընտրէն ընդօրինակուած գրչագիրն Փիլոքսենոսի անունը կը կրէր՝ յառաջաբանով։

Զարմանալի հանելուկ մ՚է իրաւցնէ, թէ ԺԳ դարում գրուած երկու նոյնանման և պատկառելի ճառընտիրներ[5], որոնք ի հարկէ աւելի հին օրինակէ մի կամ տարբեր օրինակներէ գաղափարուած են, ի՞նչպէս կ՚ըլլայ որ մի և նոյն թուղթը ոչ միայն իրարմէ տարբեր անձանց անուամբ կը մակագրեն, այլ և գլխովին այլազան պարագաներով։ Եւ սակայն կատարեալ իրողութիւն մ՚է այս. և այդ թղթին և անկէ հանելիք հետևութեան կարևորութիւնն՝ ըստ իս՝ նորա բուն հեղինակը որոշելուն մէջ կայացած է։ Դժուարին կնճիռ մ՚է անտարակոյս, բայց մենք հետևեալ հարցերով՝ իբրև ունելեօք՝ պիտի ջանանք լուծել զայն։ Ա. Ո՞վ էր Աբրահամ Մամիկոնէից եպիսկոպոսն, ի՞նչ ժամանակի մէջ ապրած ու

1. Այսպէս. Երանելւոյն Փիլոքսինոսի Նաբուգայ սրբոյ եպիսկոպոսի՝ պատճառ հաւատոյ վասն պատմութեան տիեզերական և ընդհանուր սուրբ ժողովոյն Եփեսոսի և վասն անօրէն հայհոյութեան Նեստորի, ի խնդրոյ Տեառն Կոմիտասայ Հայոց կաթողիկոսի։

2. Կ. Պոլիս 1853, էջ 9–27։

3. Պատմ. հայկ. հին դպր., Վենետիկ 1886, էջ 389։

4. Մայր ցուցակ, էջ 30 և 1160։

5. Որոց առաջինն, այն է՝ Առաքելոց վանքինը, գրուած է յամի Տեառն 1206։ Իսկ մեր մատենադարանի ճառընտիրը (ԺԳ) գրուած է յամին 1269։

գրած, և ո՞վ և ե՞րբ անկէ տեղեկութիւններ ուղղող Վաչագանը Բ. Ո՞վ էր Փիլոքսենոս, և կարո՞ղ էր արդեօք թուղթ գրել առ Կոմիտաս:

Որքան մեզ յայտնի է, Հայոց հին պատմագրաց քով չկայ Արտաշամ Մամիկոնեից եպիսկոպոսի մասին ոչ միայն ժամանակագրական որոշ տեղեկութիւններ, այլ և ոչ յիշատակութիւն: Թովմա Արծրունի¹ միայն կը յիշատակէ զնա, լծորդելով Վասակ Արծրունեաց իշխանի և իւր Տաճատ(ի) Գուսեր կամ Գասարդ եղբարց ի Բիւզանդիոն կոչած ժամանակ հանդիպած արտաքսածի մի հետ. այսինքն է, երբ թէ Քաղկէդոնի ժողովէն տարիներ վերջ, երբ Մարկիանոս կայսր կ՚առաջարկէ տանց, որ ընդունին այդ ժողովին իբրև տիեզերական և ուղղափառական, նոքա կը դիմեն գրով «առ Արտաշամ Մամիկոնեից եպիսկոպոսն, որ էր աշակերտ Ս. Սահակայ», և կը ծանուցանեն իրեն՝ կայսեր կամքը. և իբր թէ պատասխանի մ՚իսկ կ՚ընդունին Արտաշամէն, չհաւանել կամաց կայսեր: Արդ, գիտելով որ Մարկիանոս յամին 457 կնքած է իւր մահկանացուն, թողլով իրեն յաջորդ, յ7 Փետրուարի, զԼեւոն Ա. կը հետևի որ մեր պատմագրի տուած տեղեկութեան համաձայն՝ Արտաշամ յամին 452–457 արդէն եպիսկոպոս էր: Սակայն, ըստ իս այսպիսի մի աւանդութիւն հեռի է ի ճշմարտութենէ, և իբրև հակապատմական զառանցանք՝ արժանի է դասուելու այն ազէտ գրչակներու անհիմն բանդագուշանաց կարգին մէջ, որոնք յանուն Խորենացւոյ, Դաւիթ Անյաղթի և ուրիշ թարգմանիչներու եւ հնարեցին կեղծ վիճաբանութիւններ, որոնք այսօր մեզ ծաղու և կարեկցութեան միայն առարկայ են, և ոչ այլ ինչ: Եւ յիրաւի, Ղ. Փարպեցիէն² գիտենք, որ Տաճատ Արծրունի էր մին ի կապելոց նախարարաց, որոնք Պերոզի թագաւորութեան վեցերորդ տարին, այսինքն է՝ յամին 463՝ հազիւ ուրեմն վերադարձան ի Հայս, և հոն խաղաղութեամբ վախճանեցան «ի գիրս հարց իւրեանց»: Նոյն իսկ եթէ պահ մի ենթադրենք, թէ յամին 450 Հայոց կողմէն առ Թէոդոս ղրկուած դեսպանական անձնախմբին մէջ լինէին Արծրունեաց յիշեալ իշխանները, սակայն և այնպէս կայսր — և այն իսկ Մարկիանոս կայսր — կողմանէ Քաղկեդոնի ժողովի և որոշման մասին ենթադրուած առաջարկութիւնն անտեղի է. վասն զի այդ ժամանակ դեռ ոչ ժողով՝ գումարուած էր

1. Պատմութիւն տպ. ի Կ. Պոլիս 1852, էջ 90:
2. Պատմ. տպ. ի Վենետիկ 1874, Դպր. Բ. գլ. Խէ, էջ 256:

ոչ այլ որոշողութիւն մ՚եղած։ Դարձեալ, ըստ Եղիշէի Ղազարայ՝ յամին 480, ի Վաղարշապատ գումարուած ժողովին մէջ յիշուած «Մամիկոնէից կամ Տարօնոյ եպիսկոպոսն՝ է Տէր Մուշակ», և ոչ թէ Աբրահամ, որ և ոչ իսկ ծնած էր երբեք։ Ուրեմն Թովմա Արծրունեաց երազածը կամ Աբրահամ խոստովանողն կարէր լինել, որ յետ դարձին ի Հայս՝ ընտանեաց եպիսկոպոս եղած կ՚աւանդուի, և կամ վեցերորդ դարու յեղաշրջեալ մի ուրիշ դէպք։

Աղուանից պատմիչին՝ Մ. Կաղանկատուացւոյ քով կը գըտնենք մենք, առաջին անգամ Մամիկոնէից եպիսկոպոսի մի ծղթակցութիւնը[1], նոյն պատանի թագաւորին Վաչագանայ հետ, կենդանեաց և ննջեցելներու փոխադարձ օգնականութեան մասին։ Դա մի հիմնաւոր կռուան է, որուն աւելի վըստահութեամբ կարելի է յենուլ։ Իրաւ է, որ այս երկու անձնաւորութեանց իրարու հետ ունեցած այսպիսի մի վերաբերութեան ժամանակն և պարագաներն անորոշ թողուած են պատմագրէս քով, սակայն Վաչագանայ մասին աւանդուած ինչ ինչ դէպքերէն, — որոնք նման են մերոյս Վահանայ Մամիկոնեանի ժամանակ հանդիպած դիպաց հետ, և քաջ կը զուգընթանան, — կարող ենք որոշել մերձաւորապէս յիշեալ վերաբերութեան ժամանակի անորոշութիւնքը։ Արդ, Մ. Կաղանկատուացւոյ[2] հետ՝ Սեբէոս և Սա. Առողէկ իսկ կը ծանուցանեն յայտնապէս, թէ Պերոզի թագաւորութեան վերջին տարիներում Աղուանից թագակալ իշխանը՝ մանուկն Վաչագան էր ի պահեստի, զրկուած իւր արքայական և կրօնական հայրենիք ժառանգութենէն, մինչև որ մեռաւ Պերոզ՝ պարտեալ ի Հեփթաղաց։ Վաղաշու գահակալութեան տարին և անոր հրամանաւը թագաւորեցուցին Աղուանք զՎաչագան Գ, — որ և յետոյ կոչուեցաւ բարեպաշտ, — ընդհատուած գահուն վրայ։ Իսկ որովհետև Վաղաշու գահակալութիւնն եղած է ըստ գահեկանաց 22 Յուլ. յամին 484. ապա ուրեմն նոյն կամ յաջորդ տարին գահակալած է Աղուանից թագաւորը Վաչագան։

Այս թուականէս սկսեալ կը պատմէ Մ. Կաղանկատուացի, յաջորդ գլուխներում, բարեպաշտ թագաւորիս եկեղե-

1. Որուն խորագիրն է. Երանելւոյն Աբրահամու Մամիկոնէից եպիսկոպոսի առ Վաչագան Աղուանից արքայ թուղթ սակս ննջեցելոց. «Մեծ դէր, ով սիրելի» և այլն, որ մեր ԺԳ ճառընտրի մէջ զետեղուած է անմիջապէս զկնի Խոսրովու Նեւէ եղող թղթոյն. այսինքն է, Պատմութիւն Նիկոսի սուրբ ժողովոյն, և այլն։

2. Պատմ. Աղ. հտ. Ա. գլ. ԺԷ։

ցական և քաղաքական բարենորոգութիւններն[1], և բարձրաստիճան եկեղեցականաց հետ ունեցած վերաբերութիւններն, որք կը հասնին մինչև ցամ 489։ Այս միջոցին կը գնէ Աբրահամ Մամիկոնէից եպիսկոպոսին՝ առ նա գրած թուղթը, ննջեցելոց մասին, զոր ի վեր անդր յիշեցինք, Մամթէոս Պարահոնջեայ գիտնական երիցուն ուղղեալ հարցաքննականները՝ Քրիստոսի անօրէնականաց նկատմամբ, և Ս. Գր. Լուսաւորչի, Հռիփսիմեայ և Գայիանեայ նշխարաց պատմութիւնը. որոց համար կ'ըսէ, թէ Հայոց կաթողիկոսն Յովհաննէս[2] յղած էր առ Վաչագան՝ յիշեալ Մամթէոս երէ-

1. Սոյն բարեկարգութեանց մին է և յամին 488– 489 Շուպհաղիշոյ կաթողիկոսի նախագահութեամբ յԱգուէն գումարուած ժողովը, որուն պաշտօնական կանոններն ևս մէջ կը բերէ Մ. Կաղանկատուացի, Ա. հտ. ԻԶ գլուխ։ Հ. Յ. Տաշեանի Ցուցակին մէջ, յէջ 1052 «Կանոնք առ Վաչագան արքայ» յիշուած են, իբրու այն, թէ Աբրահամու կողմէն գրուած ըլլան առ նա, սակայն գոյա Մամիկոնէից եպիսկոպոսին հետ գործ չունին։ Աբրահամու կանոնական գրութիւնն բոլորովին տարբեր հանգամանք ունէր, որուն մէկ ընդարձակ հատուածն ևս ծանօթ է մեզ։

2. Անտարակոյս այս տեղ յիշուած Յովհաննէս կաթողիկոսն՝ է Մանդակունին։ Եւ յիրաւի, ապացոյց այս բանիս ունինք մենք մի ուրիշ վաւերական և ժամանակակից յիշատակարան մեր մատենագրութեան, ԻԶ Ճառընտրի մէջ, այսինքն է՝ Գիւտ Աշխարաց Թադէոսի և Սամուելի և Իսրայելի և Սանդխտոյ կուսին, և այլն, որուն հեղինակն է Կիւրակոս ոմն հզնաւոր և աշակերտ Դաւթի միայնակեցի։ Սա՝ իբրև ականատես յետ պատմելոյ յիշեալ սրբոց նշխարաց գիւտը, ի ծնէ կուրին վրայ կատարուած բժշկութիւնը, և բոլոր Հայաստանի մէջ տարածուած համբաւը, կը գնէ ի վերջ կոյս գրութեան. «Եւ եղև (այս) յաւուրս հովուապետի, աստուածասէր և հզնազգեաց Տեառն Յովհաննու Հայոց կաթողիկոսի, և քաջանուն և նախանձախնդիր աստուածային պատուիրանացն Վահանայ Մամիկոնէից Տեառն՝ Հայոց մարզպանի և սպարապետի, որք եկին աշխարհախումբ բազմութեամբ», և այլն։ Հ. Միք. Չամչեան (պատմ. Ա. հտ. էջ 383), անուամբ Վահանայ՝ Ամատունի իշխաններէն մին հասկացնել ուզած է. սակայն Սա. Ասողիկն իսկ (Բ. գլ. Բ.) յիշատակարանիս համաձայն՝ և որոշակի Վահան Մամիկոնեան կը գրէ։ Իսկ որովհետև Մ. Կաղանկատուացի ևս այս ժամանակամիջոցիս է, որ կը պատմէ Գրիգորիսի նշխարաց գիւտը, ուրեմն Յովհաննէս Ա է, այն է Մանդակունին, Մ. Կաղանկատուացւոյ քով յիշուածն, և ոչ թէ Յովհաննէս Բ կաթողիկոսն, որ անկէ շատ վերջ է։

Աստ վերստին կը հաստատուի Մանդակունւոյ վրայ գրած Քննադատութեան մէջ յայտնած մեր կարծիքը, թէ նա յամին 485 յաջորդած է Գիւտին, անոր բանէ հրաժարականէն վերջ։ Կ. Վ. (տես Արարատ 1898, թիւ Ժ) սխալ հասկնալով մեր եզրակացութեան միտքը, այլ ընդ այլոյ գի-

ցոլ ձեռքով։ Այս մասի ընտիր չափագրութենէն և լեզուէն իսկ կը տեսնուի, թէ հին յիշատակարաններէ հաւաքուած են մանրամասնութիւնքս. ուստի եթէ հիշդ ժամանակագրական կարգաւ եւս դասաւորած է ղանոնք Աղուանից պատմիչը, պիտի կարենանք ըստ ինքեան եզրակացնել Ա գրքի ԻԵ գլխոյն մէջ բերուած պատճենէն, թէ Աբրահամ 489ին արդէն եպիսկոպոս էր, և իբրև գիտնական եպիսկոպոսի յաջորդութիւն ունեցած է անոր հետ Վաչագան, իբր կրօնական ինչ ինչ տարակոյսները լուսաւորելու համար։ Բայց ըստ իրին՝ չէ կարելի իբրև պատմական ընդունել զէթ այս կէտը. այսինքն թէ Աբրահամ յամին 489 Մամիկոնէից եպիսկոպոս եղած լինի։ Եւ տուեալս մեր այս կարծեաց ունինք այնպիսի որոշ և հաստատուն կռուաններ, որոնք Աղուանից պատմութիւնը հաւաքողէն աւելի հեղինակութիւն ունին։ Առդ, նախ և յառաջ՝ ոչ յամին 491, այն է Բաբգենի օրով ի Վաղարշապատ Նեստորականաց դէմ գումարուած ժողովին, ոչ յամին 527 Ներսէս Բ կաթողիկոսի ժամանակ ի Դուին գումարուած ժողովին և ոչ այլ այն ժողովէն վերջ գրուած Ներսիսի պաշտօնագրոց1 մէջ, յիշուած է երբեք Աբրահամ ի շարս

տողութիւնները ըրած է Լեւոն Ա կայսեր գահակալութեան տարեթուոյն նկատմամբ, զոր իբր թէ մենք չգիտնալով 474ին դրած ըլլանք։ Այսպիսի մի վրիպակ Սեբէոսին (Բ. Դպր.) ընծայելի է, որ այդ կայսեր առաջին տարին Պերոզի գահակալութեան 25 տարւոյն հետ համեմատած է, զոր և մենք խնդութեամբ մէջ բերած ենք. սակայն մեր եզրակացութիւնն ըրած ենք այս վերջին տարեթուոյ համաձայն, որ յաւելցնելով Պերոզի գահակալութեան տարւոյն, այն է 457–459ի վրայ, ինչպէս ունի Նէօլդեկէ, կ'ըլլայ 484 տարեթիւ։

1. Տես Թղթոցգիրք՝ Բաբգենի կրկին թղթերը, «Ի Պարս ուղղափառս» խորագրով. նոյնպէս, որոց առաջինը վերջերս լոյս տեսաւ Արարատ ամսագրի, 1898ի Ժ թուոյն մէջ։ Ուրախ ենք որ Կ. Վ. վերջապէս հաստատեցաւ այդու, որ Բաբգէն կաթողիկոսը Քաղկեդոնի ժողովոյն դէմ ըրած չէ Վաղարշապատու ազգային ժողովը, և ոչ այլ զայն դատապարտած է ուղղակի։ Ինքն իսկ յանկեայն և անուղղակի կերպով պիտի չդատապարտէր ըստ ինքեան, եթէ արդարադատութեամբ ըմբռնէր նաև այս պատմական հշմարտութիւնս, որ Քաղկեդոնի 600 ժողովական Հայրքն, այսպէս և Լեւոն ոչ երբեք քարոզած են, հանդոյն Նեստորականաց, ի Քրիստոս բաժանաբար երկու անձն և երկուս դէմս, ինչպէս Հայաստանեայց եկեղեցին այլ մի բնութիւն՝ միացեալ յերկուց ըստ ժամանակ՝ Եւտիքականաբար մի միայն աստուածայինը չի հասկնար։

Տես նոյն Գրքում նաև Ներսէս Բ կաթողիկոսի՝ Պատասխանի թղթոյն Ասորեաց ի Նիրսիսէ հայոց կաթողիկոսէ և ի Միրշապհոյ Մամի-

եպիսկոպոսաց. այլ Ներշապուհ կը յիշուի միշտ, իբրեւ ժամանակակից եպիսկոպոսա Տարօնոյ կամ Մամիկոնէից։

Այս բացառական փաստէն զատ՝ կան նոյնպէս այնպիսի գրական փաստեր, որ ալ աւելի ստուգիւ կը փաստեն՝ իբրեւ աւանդեան լուսով կը գծեն մեզ Աբրահամ Մամիկոնեանի եպիսկոպոսութեան ճիշդ սահմանը. այսինքն են՝ Յովհաննէս Բ կաթողիկոսի՝ առ Աբաս Աղուանից կաթողիկոս և առ Վրթանէս Սիւնեաց եպիսկոպոսն և իշխանն Միհր-Արտաշիր գրուած երկու պաշտօնական թղթերն[1], որոնք հաւանօրէն միեւնոյն ժամանակ և միեւնոյն պարագայի մէջ գրուած են. այսինքն է՝ Նեստորականաց և մծղնէից աղանդին դէմ, որ կը ծարակէին ընդարձակաբար Աղուանից և Հայոց արեւելեան հեռաւոր սահմաններուն վերայ։ Այս երկու պաշտօնագրոց մէջ իսկ ի շարս ստորագրողաց և անմիջապէս զկնի կաթողիկոսին կը կարդանք՝ «Աբրահամ Տարօնոյ և Մամիկոնէից եպիսկոպոսի» ստորագրութիւնը։ Թղթոց հին և վաւերական լինելն՝ առանց տարակուսի է, — թէպէտեւ [illegible] մի յետոյ Քաղկեդոնի ժողովի և Լեւոնի [illegible] մ՚ալ ներմուծած կ՚երեւի հոն։ Մ. կաղանկատուացւոյն՝ իսկ ծանօթ է թղթոց աւանդինը, զոր մէջ բերած է հաւատարմութեամբ իւր պատմագրութեան Բ հտ. Է գլխոյն մէջ, որով և մեր փաստը կրկին կը զօրացնէ։ Դժբաղդաբար թղթոց գրութեան տարեթիւը նշանակուած չէ, որ կարծել կու տայ, թէ Հայկ. Թուականի հաստատութենէն յառաջ գրուած լինին. այսինքն է՝ 533–550 տարիներում։ Թուականաց առաջին անելով, — համաձայն Հ. Միք. Չամչեանի[2], — մերձաւորապէս իբր տարեթիւ Յովհաննէս Բի կաթողիկոս ընտրութեան, եւ հաւանական կը կարծեմ, որ դոքա գրուած ըլլան նորա կաթողիկոսութեան առաջին տարիներուն մէջ։ Ուստի այս և նախընթաց փաստերու վրայ հաստատուած՝ կարող ենք այժմ եզրակացնել, որ նոյն ժամանակամիջոցիս և Յովհաննէս Բ

կոնէից եպիսկոպոսէ, և միւս. Ուխտ միաբանութեան հայոց աշխարհիս ի ձեռն Ներսիսի հայոց կաթողիկոսի և Մերշապհոյ Մամիկոնէից եպիսկոպոսի, և այլն խորագրուած թղթերը։

1. Որք կը գտնուին Անանեան հին գրչագրէն ընդօրինակուած մեր վանաց Թղթոց գրքին մէջ։

2. Պատմ. Հայոց հտ. Բ. Աղւանից կաթողիկոսաց, էջ 58–59։ Իսկ յամին 1880 ի Վենետիկ հրատարակուած ժամանակագրութեան մէջ. էջ 172, Յովհաննէս Բի կաթողիկոսութիւնը նշանակուած է 557–574ին, որ չափազանց կ՚երեւի ինձ։

կաթողիկոսէն ձեռնադրուած է Աբրահամ՝ Մամիկոնէից եպիսկոպոս, իբրեւ անմիջական յաջորդ Ներշապհոյ կամ ըստ յիշատակարանաց Մերշապհոյ: Հետեւաբար, նա չէր կրնար յամին 485–489, կամ ըստ Մխիթ. Այրիվանեցւոյ 500ին Վաչագանին իբրեւ եպիսկոպոս թուղթ գրած լինել. ուստի կամ այն է թէ նա՝ իբրեւ տակաւին երէց կամ վարդապետ թղթակցած է յամին 489 Վաչագանի հետ, և կամ Վաչագան ինքնին՝ 533–535 տարուին կենդանի ըլլալու էր[1]:

Գողով Փիլոքսենոսի[2] (Philoxenos), որ ծանօթ է Յունաց և Ասորւոց Քսենայաս Մաբուգեցի հին յորջորջմամբ, ըստ վկայութեան Սիմէոն Բէթ-Արշամացւոյ, ինչպէս նաև Յակոբիկեան աւանդին կենսագրի մը, էր ազգաւ պարսիկ — ասորի, և ծնած էր (հաւանօրէն Ե դարու վերջին կիսում) Յուղիանայի Գարր Նահանգի Տահալ աւանին մէջ: Ըստ բիւզանդական պատմագրաց ոմանց բանծին՝ իբր թէ նա հեթանոս ծնողաց զաւակ էր, և Զենոնի կայսերութեան 17րդ տարին, այն է՝ յամին 491, մկրտուելով, քրիստոնեայ եղած և ընդունած եկեղեցական վիճակը. սակայն այս բանս յայտ տարակուսանքն կը հաղորդուի և անհիմն: Այս ստոյգ է որ Փիլոքսենոս էր իւր ժամանակի այն նշանաւոր գրիչներէն մին, որոնք գրով և գործունէութեամբ հանդիսացան իբրեւ ախոյեանք թշնամի Նեստորականութեան և պաշտպան միաբնակ վարդապետութեան, ըստ մասաց Կիւրղի, և ամենամեծ ազդեցութիւն ունեցան արեւելքի վրայ. ի բովանդակ ընթացս Զենոն և Անաստաս կայսերաց:

Յամի Տեառն 485, Զենոն կայսեր հրամանով՝ երբ Պետրոս Թափիչէն եպիսկոպոս ձեռնադրուած՝ յաջորդեց Հիերապոլսոյ Կիւրոս եպիսկոպոսին, մրցութեան ասպարէզն արդէն բացուած էր Փիլոքսենոսի առջեւ: Անհաշտ թշնամի կանգնեցաւ նա, — դեռ չզիջացուիր թէ ինչ պատճառաւ, — Անտիոքայ արքա-

1. Անհաւանական չէ որ Վաչագան մինչեւ այդ ժամանակ ապրած ըլլայ, վասն զի 485 երբ թագ կապեց նա, դեռ պատանի էր, և դուցէ տակաւ կրնար քան զՎահան Մամիկոնեան որ 526ին մեռած կը կարծուի:

2. Այսինքն է՝ յուն. Φιλος–ξένος, որ է հիւրասէր: Ըստ ոմանց իբր թէ մկրտութեան ժամանակ դրուած ըլլայ անոր այս անունս. բայց հաւանօրէն եպիսկոպոսական ձեռնադրութեան ժամանակ և Պետրոս Կնափեցիէն դրուած կը համարուի այն, և հաւասար է յունարէնէ կազմուած ասորական անուանս Ξέναγας, զոր ի դարձ ածէ Նիկեփոր (դիրք ԺԶ. գլ. ԻԷ):

կեաց եպիսկոպոսին Փլաբիանոսի։ Նախ յամին 499 և 506 Անաստասա կայսեր հրամանաւութեամբ կրկին ժողովականներ ըրաւ ի Կ. Պոլիս, և յամին 512 գումարելով իւր կատաղի կուսակիցներն ի Սիդոն՝ աթոռընկէց ըրաւ բանի զՓլաբիանոս։ Յամին 513 միաբանած իւր դաւանութեան անմիաբաններն Երեւութականաց գլուխ Սեւերոսի հետ, դարձեալ յաջողեցաւ Անտիոքի և Պաղեստինու եպիսկոպոսներու ժողովակ մ'այլ գումարել ի Տիւրոս, և դատապարտել Քաղկեդոնի ժողովը, և կրօնաւորն Աբեւելքը՝ արխաւան և արիւնհեղութեան դաշա մի գործոյ։ Յուստինիանոս Ա. յաջորդն Անաստասայ, ատենելով Փիլոքսենոսի և կուսակցաց ձեռքով յարուցած մեծ յուզմունքը և անկէ յառաջ եկած արիւնհեղութիւնքը, յամին 518 աքսորեց զնա ի Փիլիպպուպոլիս Թրակիոյ, ուր ապա յամին 522 մեռած կ'աւանդուի։

Եւագր, Թէոդոր, Թէոփանէս, Նիկեփոր և այլք՝ իբրեւ Մանիքեցի, Նեստորական, Երեւութական և Եւտիքական ամբաստանած են զՓիլոքսէն. սակայն Ասսեմանի և ուրիշ նոր ժամանակի գիտնականներ արդէն անոր գրած նամակներէն լաւ ապացուցած են, որ նա բազմիցս կը դատապարտէ այդ և նման հերետիկոսները, և ուղղափառութիւն կը վարդապետէ։ Հետեւաբար, ընդհանուր կարծիք է, թէ Փիլոքսենոս՝ պարզապէս իւր ատեանը Փլաբիանոս պատրեալու խորամանկ քաղաքագիտութեամբ միայն միացած լինի երբեմն այդ աղանդաւորաց հետ, և ոչ թէ դաւանակցութեամբ կամ ներքին համոզումով։

Ով կ'ուզէ Փիլոքսենոսի կամ Քսենայայ Մաբուգի եպիսկոպոսի վրայ աւելի ընդարձակ տեղեկութիւններ ունենալ, թող կարդայ Ասսեմանեայ՝ Մատենադարան արեւելեան Հայոց հըմտական գրուածն և Բարոնիոս (Պատմ. եկեղ. ժողովոց) և Վալեսիոս։ Իսկ ես իմ խօսքս ամփոփելով հոս, պիտի եզրակացնեմ, թէ յամին 522 (ըստ ոմանց 520ին) արդէն վախճանուած Փիլոքսենոս Մաբուգեցին՝ բացարձակապէս չէր կարող յամին 612–624 ապրող Հայոց Կոմիտաս կաթողիկոսին հետ թղթակցիլ, թող թէ սորա խնդրանօք գրել Եփեսոսի ժողովի պատմութիւնը, ինչպէս ուզած է ապխաբար հաւատարմացնել մեզ Կոլոտիկ Յովհաննու ձեռքով և Կիրակոս Խորվիրապեցի կաթողիկոսին սրով Մշոյ Առաքելոց վանքի ձեռագրերէն գաղափարուած խղթի նորաձևար պատճէնն[1]։ Այս՝ հակաժամա-

3. Որ հին օրինակին մէջ չկար անշուշտ, կամ մեր մատենագրութեան

նակատգրական բանդագուշանք մ՚է, որուն ձեռքով և ինչ նպատակաւ այլ յերիւրուած համարինք։ Այդպիսի մի թուղթ, եթէ մինչեւ անգամ ապացուցուի որ Փիլոքսենոսին է, կամ յամին 499–506 և կամ 512–515ին գրուած ըլլալու է մի ուրիշ կաթողիկոսի, այն է՝ կամ առ Բաբգէն կամ առ Սահակ Բ, և կամ լաւ եւս առ Ներսէս Աշտարակեցի։

Մեր եզրակացութեան ի նպաստ ունինք դեռ ուրիշ կռուաններ։ Նախ որ Կոմիտաս կաթողիկոս կարօտութիւն չունէր[1] Փիլոքսենոսէ տեղեկութիւն խնդրել Եփեսոսի ժողովի մասին, և այն իսկ Է դարուն, երբ ուրիշ խնդիրներ կը յուզուէին։ Բ. Փիլոքսենի ընծայուած թղթին մէջ՝ Քաղկեդոնի ժողովին և Զ դարուն այնքան վիճաբանութեան նիւթ դարձած մի կամ երկու բնութեան խնդիրներու մասին խօսք մ՚անգամ չկայ, մինչդեռ անոր՝ այլեւայլ անձանց գրած ուրիշ թղթերն ծայրէ ծայր անոնցմով լի են։ Յառաջաբանին մէջ կեղծ Փիլոքսենոսի խօսքերն ուղղուած են այնպիսի մէկուն, որ եկեղեցական պատմութենէ անտեղեակ էր։ Ուրեմն այսպիսի հակառակիմաստ պարագաներէ կարելի է հետեւցնել, թէ կամ այս թուղթս՝ Փիլոքսենոսի հարազատ գործ չէ, և կամ անոր մի ուրիշ գրութեանց մասն, որ հեղինակի մահուանէն ետքը հաւանօրէն թարգմանուեցաւ ի հայ բարբառ։

ԺԳ Ճառընտրի ունեցածին համաձայն ըլլալու էր։ Ցիրաւի, այս բանիս շօշափելի ապացոյցը կու տայ մեզ մեր մատենադարանի ԻՋ Ճառընտիրն, որ ընդօրինակուած է Կարնոյ անթուականն, բայց բոլորովին հին Ճառընտրէ մի, ուր Փիլոքսենոսի թղթի պատճէնն՝ յառաջաբանի առաջին տողով ի միասին՝ Աբրահամու մակագրուած է, այսպէս. «Երանելւոյն Աբրահամու՝ ստորագրութիւն իրաց եղելոց եպիսկոպոսին Տարօնոյ, որ առ Վաչագան որդւոյ Աղուանից՝ վասն սուրբ ժողովոյն Եփեսոսի և լուծումն Նեստորի. Արդ այս ինչ է զոր հանդերձեալ եմ պատմել, Նեստորիոսին եղեալ»։ Փիլոքսենոսի յառաջաբանն և վերջաբանն այլ բոլորովին կը պակասին հոս, որոնք, անտարակոյս խօսելով, կասկածել կու տան նոյն իսկ գիտնական եղած փոփոխութեան մի վրայ։

1. Ցիրաւի, թղթոց գրքի մէջ պահուած է մեզ այս կաթողիկոսին՝ առ Մետրապոլիտն Կամիջոյ և անոր վիճակակալ եպիսկոպոսներուն ուղղեալ մէկ թուղթն, որուն մէջ բաց ի այն ժամանակ յուզուած խնդիրներէն՝ Եփեսոսի ժողովի մասին ևս, ինչպէս և Կիւրղի և Նեստորի վրայ, բաւական ընդարձակ և ճիշդ տեղեկութիւններ ունի արդէն, և այլոց իսկ կը հաղորդէ. ուրեմն պէտք չկար Փիլոքսենոսին դիմելու։

2. Այս բանիս կարելի է իբրև կռուան առնուլ և հետեւեալ տեղին, ուր յետ յիշելոյ կեղծ Փիլոքսենն՝ Նեստորի մոլորութիւնը, կը յաւելու այսպէս. «Բազում և այլ հայհոյութիւնս խօսեցաւ, զորս, յորժամ

Այժմ մի այլ դժուարութիւն կ'առարկուի ի հարկէ․ և զայն ևս պէտք է հարթել ըստ կարելւոյն. այսինքն թէ՝ ընդունելով հանդերձ Աբրահամու Թղթակցութեան գոյութիւնը Վաչագանի հետ, կարելի՞ է ըսել, որ նա ինչպէս Թէոդորա կայսեր․ գովասանական պատմութիւնը Սոկրատէն փոխ առած է կամ թարգմանած, այսպէս այլ Եփեսոսի ժողովի պատմութիւնը՝ Փիլոքսենոսի գրուածքէ մի, եթէ Փիլոքսենոս եղած է երբեք գրիչ սոյն պատմութեան։

Սոյն առարկութիւնը մէկ դէպքի մէջ միայն կարէ հիմնաւոր լինել, ըստ իս. այսինքն՝ եթէ վաղը ապացուցուի, որ այդ պատմութեան ասորի բնագիրը կայ[1] եղեր՝ Փիլոքսենոսի անուամբ։ Դարձեալ, գիտելով որ Աբրահամ՝ Փիլոքսենոսէն վերջ իսկ ապրած է, ուստի՝ դէթ իւր նկատմամբ դժուարութիւն մի չկայ, որ ասորի եպիսկոպոսէն օգտուած ըլլայ։

Վարդան պատմիչ[2] բիւզանդական կայսերաց համառօտ ժամանակագրութիւնը կարգած ժամանակ, իւր յատուկ խառնախօսութեամբն յանկարծ խօսքը Փոտայ առ Հայս գրած Թղթոյն վրայ կը դարձնէ, և կու տայ մեզ այս կցկտուր տեղեկութիւնները․ այսինքն թէ՝ Ներսէս Բ Աշտարակեցի կաթողիկոսի ժամանակ, Հայք՝ Աբդիշոյ Սամեցւոյն թելադրութեամբ ըրած ըլլան Դուինայ Բ ժողովը, և թարգմանած Փիլոքսենոսի և Տիմոթէոս Կուզի գրուածքը։ Յիրաւի, Փոտի՝ առ Զաքարիա կաթողիկոսն Հայոց գրած այդ Թուղթը[3], զոր ունիմք ի ձեռին

1․ Փ. Կոնիբեր, յորմէ խնդրած էի տեղեկացնել ինձ, թէ արդեօք Փիլոքսենոսի ընծայուած Թղթի բնագիրը կը գտնուի՞ Բուտճէի հրատարակութեան մէջ, կը գրէր վերջերս, որ այդքէ անցնելով այդ հրատարակութիւնը՝ Փիլոքսենոսի այդպիսի մի Թղթի յիշատակութիւնն անգամ չկայ հոն։

2․ Պատմ. տպ. Վենետիկոյ 1862, էջ 84։

3․ Որ կը գտնուի մեր թիւ 230 գրչագրին մէջ (ընդօրինակուած յամին 1823 ձեռամբ Պօղոսացի Յովհաննէս դպիր Տէր-Կարապետեանի, ի Նիկոմեդիա գտնուող ձեռագրէն), որ կը պարունակէր նոյնպէս Ն. Շնորհալւոյ Թղթերը։ Վանացս Զ հաւաքման մէջ ևս կայ նոյն Թուղթը։

Այդ Թղթէն կ'արտագրեմ հոս միայն հետևեալ կտորը. «Բայց հակառակութիւն ինչ ոչ գոյր վասն ժողովոյն, այլ ամենեքեան ընդունէին զժողովն՝ մինչև ի ժողովն Դունայ, որ լինի ամք ՋԴ, յերկրորդ ամայն Մարկիանոսի կայսեր՝ մինչև ցքսան ամն Յուստինիանոսի, և մինչև վեց ամն Ներսէսի կաթողիկոսութեան՝ որ յԱշտարակայցն էր, որ արար զժողովն ի Դուին ի Թագաւորելոյն Հայոց և Պարսից, և ի չորս և ի տասն ամին Խոսրովու Պարսից արքային, ի ձեռն Աբդիշոյի ասորւոյ, որ եկեալ էր ի Սամոսոյ, ի Սարափթոյ վանիցն, և այլք ընդ նմա։ Որք

Դիտելմի՛ որ Յուստինիանոս Ա. առանձնորդ տարին կը համապատասխանէ Գրիգորի 527 թուականին, վասն զի նա գահը ելած էր 518ին. ապա ուրեմն Փաւստ և Վարդանայ այս բացորոշ վկայութեան վրայ հաստատուած կարենք եզրակացընել, թէ ոչ միայն Դունայ Բ ժողովը մօտ այս թուին գումարուած է, այլ նոյն իսկ Փիլոքսենոսի գրուածներն այդ ժամանակ թարգմանուած են: Հաւանօրէն Աբրահամ Մամիկոնեան, իբրև աշակերտ թարգմանչաց և իբրև պետական վարդապետ, ինքն ևս մասնակցած կարող է ըլլալ այդ թարգմանութեանց: Այս պարագայովս լաւ կը մեկնուի Աբրահամ Մամիկոնէից եպիսկոպոսի Թղթի գաղափարն. այսինքն է՝ Փիլոքսենոսի հետ ունեցած նմանութիւնն և աննմանութիւնքը[1], զորս կարենք թարգմանչին՝ իւր թարգմանութենէն օժանդակուած ըլլալուն ուղղակի արդիւնք համարել, եթէ յայտնուի երբեք ասորի եպիսկոպոսի այդ գրութեան ասորական բնագիրը:

Եթէ այդ թուղթն 527էն քիչ առաջ գրուած է առ Վաչագան, կը հետևի որ Սօկրատն այդ թուականէն յառաջ արդէն թարգմանուած և ծանօթացած ըլլայ Հայոց: Ես չեմ ուզեր այս տեղ կանգ առնել՝ ապացուցանելու համար, որ այդ թարգմանութիւնն իսկ Աբրահամու ձեռքով կատարուած է անպատճառ, թէպէտև ոճէն զատ ուրիշ կռուաններ ևս կան այդպէս կարծելու: Այո՛, որչափ որ Աբրահամու քով Եփեսոսի ժողովի վերաբերեալ մասը ունի ոճոյ զգալի տարբերութիւն վերջին մասէն, սակայն այդ կարենք ուղղակի արդիւնք համարել ասորի բնագրին, զոր լաւ հասկնալով Աբրահամ, ա[illegible]բար կարող եղած է հայացնել. մինչդեռ վերջին մասի նկատմամբ՝ դիտելու ենք, որ նա յունարէն չգիտնալուն՝ ստիպուած էր Մեծ Սոկրատի հայկական թարգմանութեան վրայ յօրինել իւր շարադրութիւնը, և հետևաբար անոր ազդեցութեանն ենթարկուիլ: Հանդերձ այսու պէտք է ըսել, թէ Աբրահամու Թղթի առաջին մասի մէջ իսկ կան յաճախ նման բառեր և ասացուածք, զորս կը գտնենք նաև Սոկրատի թարգմանութեան մէջ:

Բայց, առանցմէ ելլի՝ ուրիշ երկու աւագ կարևորութիւն

1 Այս աննմանութիւնքս միայն բառական տարբերութեանց մէջ չէ որք երևան կու գան, այլ մանաւանդ ընդհանուր շարադասութեանց յեղանակաւորութեանց և ամբողջական բացատրութեանց, որոնք Աբրահամու Թղթին մէջ աւելի պարագաներ կը յայտնեն՝ նկատմամբ այն անձին և ժամանակին՝ առ որ գրուած է:

ունեցող կէտեր նկատեցինք մենք Աբրահամու Թղթին և Փոքր Սոկրատի յարաբերութեանց մէջ. Ա. զի Թէոդորի դաւանութեան մէջ՝ Աբրահամ իսկ հանգոյն Փոքր Սոկրատայ խմբագրին՝ տեղ տեղ խոտորելով Մեծէն, ընդարձակ յաւելուածներ կ'ընէ, և յետոյ կը դառնայ և անկէ կ'առնու իւր Թելը: Բ. Փոքր Սոկրատայ խմբագիրն՝ Եփեսոսի ժողովն և Նեստորի պատմութիւնն ըրած և Մեծ Սոկրատէն խոտորած ժամանակ՝ ինչ ինչ բաներ Աբրահամու Թղթին համաձայն կը պատմէ, — ինչպէս օրինակ իմն, Նեստորի մոլորութեան յառաջբերութիւնն և դատապարտութեան ինչ ինչ պարագաները: Արդ, առաջին կէտէն կը հետևի, ըստ իս, թէ նոյն ինքն Աբրահամ եղած ըլլայ խմբագրողն ալ Փոքր Սոկրատայ, և խմբագրած է զայն հայկ. հին Թարգմանութեան կամ Մեծ Սոկրատայ վրայ: Իսկ երկրորդ կէտէն կը հետևի, թէ Աբրահամու Թղթի առաջին մասն, այսինքն է՝ Եփեսոսի ժողովոյն և վասն Նեստորի առ Վաչագան գրածն, յառաջ եղած է քան Փոքր Սոկրատի խմբագրութիւնը, և կամ յետոյ միացած է Աբրահամու Թղթին հետ:

Յամենայն դէպս քմահաճոյ կ'երևի ինձ այն կարծիքն, որով պնդեց Նորայր, թէ Աբրահամու Թղթէն գողցած է Փոքր Սոկրատայ Թարգմանիչն, որուն վրայ լիրբ, ագէտ[1] և այլ ածականներ Թափած չէ որ չի Թափէ: Այսպիսի մի կարծիքի անհաստատութիւնն ակներև պիտի լինի Թղթոյս և Սոկրատայ համեմատութեանն, ուր պիտի տեսնէ Բիւզանդացին, որ ընդհակառակն Աբրահամու Թղթի յիշեալ մասը՝ Սոկրատայ Թարգմանութեան վեցերորդ դարու կատարելագոյն օրինակէ մ'առնուած է, որուն հետքերը կը գտնենք նոյնպէս Սեբէոսի[2], Ան. Շիրակացւոյ, Ջուանշրի Վրաց պատմութեան և

1. Մեր կարծիքով ընդհակառակն՝ նա ագէտ մէկը չէր, այլ ունէր բաւականաչափ գիտութիւն. և ասոր ապացոյց են այն բազմաթիւ հեղինակութիւններն, զորս կարող եղած է ոչ միայն ունենալ և ընթեռնուլ, այլ և իւրն իւրացնել՝ որոնցով: Այսպիսի մի բան այնպիսի դարու մէջ շատ բան ըսել է: Հետևողութիւնն՝ եթէ որ և է պարագայի մէջ հեղինակի մի ագիտութեան փաստ առնուի, այն ժամանակ Նորայրի պաշտած Խորենացին ամենէն մեծ ագէտն և խարդախողը պիտի համարուէր. և սակայն այդպէս չէ:

2. Պատմ. ի Հերակլ, տպ. Կ. Պոլսոյ 1851, համեմատէ Բ. Դպ. էջ 35, Յուլիանոս Ուրացողի, Սոկրատայ պատմագրութեան և Լիկինիանոսի կնոջ Կոստիի մասին առած տեղեկութիւնները, որոնք Փոքր Սոկրատին համաձայն են:

հայաստանեան գրոց մէջ. Թէպէտեւ այդ օրինակք իսկ յաջորդ դարուց մէջ կրած են դարձեալ ինչ ինչ խանգարումներ, ընդօրինակողաց ձեռքով։ Եւ ըստ մեր բաւական կասկած մ'է, ըստ իս՝ վերոյիշեալ երեւոյթն. այսինքն է, նախ որ Աբրահամու Թղթին մէջ իսկ Թէոդորի գովասանութիւնը՝ Փոքր Սոկրատի խմբագրին յատուկ ամենուրեք ի վար արկած ոճին համաձայն է, մանաւանդ այն տեղերն՝ ուր յայն բնագրէն կը խոտորի և յաւելուածներ կ'ընէ իւր կողմէն. մինչդեռ Աբրահամ, եթէ Մեծ Սոկրատէն անկախ և յունարէնէ թարգմանած ըլլէր այդ գլուխը, տարբեր ոճ և միանգամայն հաւատարմութիւն ցոյց տուած պիտի ըլլէր մեղ դէպ ի իւր բնագիրը։ Երկրորդ, այս տեղ եւս, ինչպէս ընդհանուր կերպով Փոքր Սոկրատի մէջ, կը տեսնուին յաճախ Մեծ Սոկրատին համաձայնող բառեր և բացատրութիւններ. իսկ ուր անկէ կը տարաձայնի, յայնէն եւս գլխովին տարբեր բառեր և բացատրութիւններ կը գործածէ։ Արդ, եթէ Աբրահամ երկու Սոկրատներէն իսկ յառաջ և անկախ եղած ըլլէր, այդ երեւոյթը բնաւ տեղի պիտի չունենար ըստ ինքեան։ Եւ ուրիշ առթի կը թողում ընդարձակաբար քննել, թէ արդեօք Սոկրատը կարելի՞ է որ Խորենացւոյ պատմութիւնը գրուելէն յառաջ թարգմանուած ըլլար, և Մովսէս այլ այն թարգմանութենէն օգտուած, եթէ ընդհակառակն բոլորովին. իսկ այժմ զայս միայն կրնամ ըսել, որ վեցերորդ դարու առաջին քառորդին ծանօթ էր այն՝ նոյն իսկ Աբրահամու, եթէ սորա թուղթը վաւերական է ստուգիւ, և եթէ Թէոդորի գովասանութիւնը՝ Սոկրատայ հայերէն թարգմանութենէն առնուած է, ինչպէս ես կարծեմ։ Առանձին ուսումնասիրութեան կարօտ են, ուրեմն, այս նկատմամբ՝ նաեւ Փիլոն Տիրակացւոյ է դարում ապրած և Սոկրատայ խմբագրութեան մէջ մասնաւոր դեր խաղացած ըլլալու խնդիրներն, ինչպէս նաեւ անոր Մեկենաս եղող Ներսեհի վերաբերեալ կեղակարծ յիշատակարանը։

Գալով այս հարցիս, այսինքն թէ, Մեծ Սոկրատն եղած է արդեօք այն նախընծայ թարգմանութիւնը, թէ ընդհակառակն Փոքրն, ինչպէս կը կարծէ Նորայր. կ'ըսենք որ դէթ Աբրահամու Մամիկոնէից եպիսկոպոսի Թուղթն և Սեբէոսի Բ Դպրութեան անանուն հեղինակը՝ վերջնոյս աւելի կը նպաստեն, իրենց բառացի նմանութիւններով։ Բայց քանի որ այդ հեղինակութեանց հնութեան և վաւերականութեան մասին եղած երկբայութիւնքը դեռ բոլորովին լուծուած չեն, և քանի

որ դոցա գործած խմբագրութիւնն իսկ յայտնապէս հնապոյնի մի ակնյայտնի հետքերը կը կրէ իւր վրայ, մենք երբեւ անկողմնակալ քննադատ չենք կարող բացարձակապէս մին ընդունել և միւսը մերժել։ Մեծ Սոկրատի հրատարակութեան ատեն և տարիով յառաջ արդէն իմ առանձին կարծիքս յայտնած եմ Բազմավէպի մէջ. այժմ Աբրահամու Թղթի քննութենէն վերջ իսկ բաւական պատճառներ չեմ գտներ՝ հակառակ կարծիքն ընդունելու։ Տեսնելով մանաւանդ մէկ կողմէն Մեծ Սոկրատայ երկու եւեթ, և այն իսկ պակասաւոր օրինակաց չարաչար խանգարմունքը, իսկ միւս կողմէն այլ՝ այդ Թարգմանութեան, — յունաբանութեան թերութիւններով հանդերձ, — յաճախ Փոքրէն ունեցած հայկական հին լեզուի և քերականական ձեւերու առաւելութիւնքը, աւելի սորա կու տամ յառաջնութիւնը՝ քան Փոքրին։ Ցիրաւի, այս ամենամեծ զանազանութենէս զուրս՝ երկուքին մէջ երբեւ ընդհանուր մի բան առնուած բառերու և ասացուածոց խորհրդաւոր նոյնութիւնն իսկ յայտնի նշան է, թէ մին՝ միւսոյն վրայ կատարուած է։

Այս կէտս բացատրած կը համարի Նորայր, ենթադրելով՝ որ Մեծ Սոկրատը՝ Փոքրին հետեւողութեամբ յետոյ ուրեմն, այն է՝ Է դարուն թարգմանուած ըլլայ։ Այսպիսի մի փաստ այն ժամանակ միայն կարեւորութիւն պիտի ունենար, եթէ Փոքրն եղած լինէր յոյն բնագրի վրայ հիմնուած՝ հաւատարիմ թարգմանութիւն մի. բայց քանի որ սա նոյն իսկ Նորայրի կարծեօք ուրիշ բան չէ, բայց եթէ անվստահելի և քմահաճոյ հաւաքումն բազմապիսի հեղինակութեանց՝ ըստ ժամանակագրական և հակապատմական յառաջբերութեամբք, շատ դժուար է, որ Մեծի թարգմանիչն ասոր հետեւած ըլլար և յոյն բնագրի դէմ բազմիցս մեղանչած չըլլար։ Եւ սակայն այս կատարեալ իրողութիւն մ'է, զոր ուրիշ անգամ ցոյց տուած ենք, — նոյն իսկ յոյն բնագրի համեմատութիւններովն՝ երուսաղէմեան օրինակի հետ, — Տէր-Մովսէսեանի մի քանի գահավէժ ենթադրութեանց հակառակ։ Փոքր Սոկրատայ խմբագրութեան մէջ մէկէն աւելի յետնութեան յայտարար նշաններ կան, որք կ'անցնին անդր քան զանդր յոյն պատմագրի ժամանակը. և Զ դարէն իսկ վար կ'իջնեն, որով իրաւամբ կարծել կու տայ մեզ, որ այդ դարէն վերջ իսկ նորանոր յաւելուածներ և փոփոխութիւններ կրած ըլլայ, երկրորդ անգամ։ Ինչպէս ըսի, յօդուածս չի ներեր ինձ մանրամասնութեանց իջնել. բայց այս և հետեւեալ համառօտ դիտողութիւնքս

իսկ՝ ըստ բաւականին կ՚ապացուցանեն, թէ ստուգիւ Փոքրն եղած է հետեւող Մեծ Սոկրատայ։ Օրինակի աղագաւ, նաեւ որ մեղսաւոր բանգի բացատրութիւնն (յէջ 742) որ Սրբոյ Զատկի կանոնէն (տես ԳՋ Հարց) և Հանգստեան (ԳԿ Հարց) շարականներէն առնուած են։ Բ. ընդարձակ Սեղբեստրոսի Վարուց յառաջաբանի մի մասն, որ աչքի զարնող կերպով Փոքր Սոկրատի պատմութեան յառաջաբանին մէջ ներմուծուած է. այսպէս նաեւ սորա վերջաբանին մէջ՝ խմբագրին առ Ներսէս կամարականն ուղղեալ ուղերձն, որ Սոկրատի վերջաբանին հետ խառնուած և մէջ բերուած է՝ անյարմար և բանագող կերպով։ Գ. Փոքր Սոկրատայ օրինակներէն ոմանց վերջը Թաղկեդոնի ժողովքին դէմ հատուած մ՚այլ կայ, Թէոդոսի և Անաստասա կայսերաց խառնափնդոր արարուածներով։ Դ. Փոքր Սոկրատայ խմբագիրն՝ երբեք յոյն բնագիրն իւր առջեւ ունեցած և գործածած չերեւիր, որուն միայն հետեւող է Մեծին թարգմանիչը՝ քայլ առ քայլ և բառ առ բառ, որուն համար և եղած է յունաբան։ Ե. Փոքր Սոկրատայ խմբագիրն՝ նոյն կերպով օգտուած է Սեղբեստրոսի ընդարձակ Վարքէն, ինչպէս Մեծ Սոկրատի պատմութենէն. մինչդեռ սորա, այսինքն՝ Մեծ Սոկրատի թարգմանչին, բնաւ ծանօթ չերեւիր Սեղբեստրոսի Վարքը, և կամ այն հակիրճ յիշատակութեամբ միայն, զոր ըրած է յոյն բնագիրն։ Զ. Փոքր Սոկրատայ խմբագիրն յաճախ և կուրօրէն հետեւած է Մեծին նոյն իսկ դրչագրական աղաւաղութեանց և խանգարուած ձեւերուն, թէ ըլլայ չարաբանութեանց և թէ յատուկ անուանց մէջ, և ասոր կրճատուած կէտերն՝ ինքն եւս կրճատեր է, մինչդեռ Մեծն ընդհակառակն միշտ յունին համաձայն կ՚ընթանայ, բացառութիւնք խիստ քիչ են. և այս իսկ յայտնի նշան մ՚է առաջնոյն յետնութեանը։

Մեր համառօտիւ մէջ բերած այս փաստերը՝ սոսկ ենթադրութիւններ չեն, այլ առանձնաբար Մեծ և Փոքր Սոկրատներու վրայ եղած լուրջ համեմատութեանց իբրեւ հետեւանք եզրակացութիւններ, որոց ստուգութեան վրայ Նորայր ինքնին ալ իսկ չտարակուսի անշուշտ, եթէ առանց պաշարուելու Մեծ Սոկրատի երուսաղէմեան օրինակի կեղակարծ յիշատակարանի հեղինակութենէն, ինչպէս նաեւ Էջմիածնայ կատարուած ամենաղաւաղ հրատարակութենէն՝ ուշի ուշով իրարու հետ համեմատէ երկու թարգմանութիւնները ընդ բնագրին։ Մենք կարող էինք իբրեւ ընդհանուր ճշմարտութիւններ արտայայտած այդ կէտերէն իւրաքանչիւրին՝ բազմաթիւ դրա-

կան օրինակներ մէջ բերել. սակայն այսու մեր առաջադրեալ նիւթէն խոտորած պիտի լինէինք. ուստի ուրիշ պատեհի թողլով զայն, այժմ երկու բան միայն կ՚ուզենք այս տեղ ակնե-րեւ ընել համեմատութեանց ձեռքով. Ա. Թէ ինչպէս Փոքր Սոկրատն՝ երբ Մեծէն բառ առ բառ համառօտներ կ՚ընդօրինակէ, կը շեղի իւր սովորական ոճէն և լեզուէն, և, հանգոյն նմին յունաբան կը դառնայ. իսկ ուր ընդհակառակն Մեծ Սոկրա-տի սահմանէն և պատմողական կարգէն զարտուղած է, այ-նուհետեւ յունաբանութեան հետք ինչ չի ցուցաներ բնաւ։ Բ. Թէ Մեծ Սոկրատն՝ ընդհակառակն՝ թէ՛ ի մերձաւորու-թեան և թէ Փոքրին հետ ունեցած հեռաւոր յարաբերու-թեանց մէջ միշտ նոյն ոճը և նոյն լեզուն պահած է, և միեւնոյն յունաբանութիւններն ի վար արկած։ Առաջին կէ-տին օրինակ ըլլայ Ոսկեբերանի վարքէն հետեւեալ հատո-ւածն, յէջ 493։

ՄԵԾ ՍՈԿՐ.

«Իսկ վասն զի երեւելի էր այրս, յորոց եթող ի բանից, և յորոց ի բազում դժնդակս զյանդիմանութիւն արար, ար-ժանիս համարիմ ոչ լռել որ ըստ նմայն էին պատահեալքն. այլ որքան ժամանակի պատ-մութիւնս է վարկանելի՝ ասել, եթէ ուստի՞ էր, և կամ յորո՞ց, և ո՞րքան եկն ի վերակացու-թիւն եպիսկոպոսութեան, և զիարդ դարձեալ որոշեցաւ, և ո՛րպէս յետ մահուանն պա-տուեցաւ առաւել քան ի կեն-դանութեան»։

ՓՈՔՐ. ՍՈԿՐ.

«Իսկ վասն զի երեւելի էր (և յերեւելեաց էր Յոհան կո-չեցեալն ի հայրապետութիւն Կոստանդնուպօլսի) յորոց ե-թող ի բանից, և յորոց ի բա-զումս դժնդակս զյանդիմանու-թիւն արար, արժանիս համա-րիմ ոչ լռել, այլ ասել որ ըստ նմայն էին պատահեալքն, ոչ որքան են, այլ որքան ժա-մանակն պատմութեան է վար կանելի. եթէ ուստի՞ էր և կամ յորո՞ց և ո՞րքան (յայս յառաջադիմութիւն) եկն ի վե-րակացութիւն բազում եպիս-կոպոսաց, և զիա՞րդ դարձեալ որոշեցաւ, և ո՞րպէս յետ մա-հուանն պատուեցաւ յաւէտ (յամենայն երկրի, և ո՛րքան նա փորձանս կրեաց ի մա-լողաց և յարքունեաց)»։

# Լ

Դիտելու է որ նոտրագրուած բացատրութիւններն յատուկ չեն Փոքր Սոկրատայ թարգմանչին, այլ Մեծին միայն. իսկ փակագծի մէջ առնուած առաջին և երկրորդ յաւելուածներն՝ որ մի և նոյն իրի, այն է՝ եպիսկոպոսապետութեան, կրկնաբանութիւնք են, յայտնապէս ցոյց կու տան, թէ Փոքր Սոկրատի խմբագիրն եղած է յորտաող Մեծին. ուրիշ կերպ չէ կարող լինել։

Դնենք օրինակ մ՚այլ նկատմամբ երգին երից որքառտացութեանց, զոր Սոկրատ՝ Յովհ. Ոսկեբերանէն հաստատուած կ՚աւանդէ ընդդէմ Արիանոսաց, երգել երիցս յաւուրն ի հրապարակամիջի. իսկ Փոքր Սոկրատի խմբագիրը՝ Մեծի առնմանէն դուրս ելնելով իւր ժամանակի և եկեղեցւոյ սովորութեան համեմատ այլակերպած է զայն և հայացուցած։

ՄԵԾ ՍՈԿՐ.

Յէջ 323–25. « Արիանոսքն՝ որպէս ասացաք՝ արտաքոյ քաղաքին զժողովսն առնէին։ Այլ իբրև իւրաքանչիւր շաբաթուցն տաւնք հասանէին, առեալ զորս յայնժամ շաբաթու և կիւրակէի, յորս հաւաքմունք ըստ եկեղեցեացն սովորութեան լինէին, նոքա ներքսագոյն դրանց քաղաքին ի սրահսն հաւաքեալք և սարհնութիւնս ընդդիմաձայնս առ Արիանոսացն կարծիսն յարդարեալք ունէին կամաւ. և զայս առնէին ըստ յոլով մասին գիշերոյն։ Իսկ յառաւաւտինսն զնոյնպիսիսն ընդդէմ ընդ մէջ քաղաքին ելանէին ընդ դրունսն, և ի տեղիս ուրանաւր ժողովէին՝ հասանէին։ Վասն զի և հայհոյութիւնս և հակառակութիւնս ընդդէմ Խարհաւղացն համագոյութեանն առեալ ոչ

ՓՈՔՐ ՍՈԿՐ.

« Ի վերայ այսոցիկ անճցոյց (Ոսկեբերան) և բազում օրհներգութիւնս և աղօթս ի գիշերային փառաբանութեան՝ ըստ խորհրդածութեան տօնից. և կիւրակէի և շաբաթու, ըստ համագոյութեան հաւատոյ ընդդէմ հերետիկոսացն, մանաւանդ Արիանոսաց, որ նախկին իսկ ունէին առնել ընդդէմ ուղղոց. զգիշերային օրհնութիւնս հնչեցուցանէին ի դուրս ի լռելիս բազմաց, զի այնու կարասցեն որսալ զպարզամիտսն զնոյն և յառաւօտս զհակառակս համագոյ Երրորդութեան, որ մին քան զմին նուազ առնէին յօրհնութիւնսն Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ բարձր ձայնիւ։

դադարեսցին. քանզի բաղում անգամ և այսպիսի առաքինութիւն առնէին. Ո՞ւր են այժմ առեն զերբեան մին զաւրութիւն:

Յայնժամ երկուցեալ Յովհաննու, զի մի ոք ի պարդագունից յայսպիսի առաքինութեանց արտաքս քարշեսցի յեկեղեցւոյն, ընդդէմ նոցա կարգէր զարս (զօրս) իւրոյ ժողովրդեան, որպէս զի արդեաւք և նոքա ի գիշերինան առաքինութիւնս պարապեսցին, չիջուցեն զնոցա զոր առ այն փոյթն, և հաստատուն զընտանիան առ իրեանց հաւատ յարդարեսցեն, և ոչ մոլորեսցին յԱրիանոսացն: Այդ դիտուած Յովհաննու լինէր քաղցր, և խոհեմութեամբք և վշտաւք զվախճանն ընկալաւ: Քանզի իբրև պայծառագոյնքս այսուքիկ համագայութեանն առաքինութիւնք՝ ի գիշերայինան առաքինականութիւնս ցուցանէին. քանզի յարդարեալ լինէին խաչք արծաթիք, բերելով և լուցմունս ի մոմեայ ջահից, Թագուհւոյն Եւդոքսեայ տուեալ՝ զոր յայսոսիկ վճանակն » (յ. δαπάνην = ծախս):

Յայնժամ երկուցեալ Յոհաննու, զի մի ոք այսպիսի օրհնութեանց արտաքս քարշեսցի յեկեղեցւոյն ի պարդամտացն կամ ի դիւրահաւանիցն, ընդդէմ նոցա կարգէր զօրս փառաբանիչս ամենասուրբ Երրորդութեան միոյ Աստուածութեան և փառաց և զօրութեան, որպէս զի արդեաւք և նոքա գիշերային օրհնութեամբք օրհնեսցեն զԱստուած, և չիջուցեն զնոցա հայհոյող օրհնութիւնսն, և զընտանիս հաւատոյ պահեսցեն ի մոլորութենէ աղանդոյ առոյգ փառաբանութեամբն, որ ի Հայր և յՈրդի և ի Հոգին Սուրբ: Այս դիտուած էր բարի, և ոգով արդելաւ: Քանզի պայծառագոյն որբառասցութեանն համագոյ Երրորդութեան ի գիշերայինան լսելոյ օրհնութիւնս, յարդարեալ խաչիւք և անուշահոտ խնկովք մոմեղինովք և ջահիւք շրջելով ընդ քաղաքն օրհնէին զԱստուած, և զամենեցուն լսողացն միտս շարժէին ի բարեբանութիւն ամենասուրբ Երրորդութեան, և ընդ առաւօտս որբառասցութիւն Երրորդութեան՝ Որդւոյ ընծայեցուցանէին, քաղցրաձայն եր-

ՄԵԾ. ՍՈԿՐ. | ՓՈՔՐ ՍՈԿՐ.

գով՝ Սուրբ Աստուած ասելով, սուրբ և հզօր, սուրբ և անմա- որ խաչեցար վասն մեր, ողորմեա մեզ»։

Այս համեմատութենէս ակներեւ կը տեսնուի նախ՝ Մեծ Սոկրատայ սովորական ոճի և յունաբանութեան պահպանումը, և Փոքրին անկէ զգալի կերպով խոտորիլը. Բ. Փոքր Սոկրատն իւր պատմածին իբրեւ հիմն ունի Մեծ Սոկրատը, ինչպէս ցոյց կու տան տառ առ տառ բառացի նմանութիւններն: Այո՛, սորա խմբագիրն հայերէնը միայն իւր դիմաց ունեցեր է, իբրեւ հնագոյն թարգմանութիւն, յոյն բնագիրն անոր բոլորովին անծանօթ է, վասն զի նորա ասածներու մի մասն Հայերէնի շարադրութեան վրայ յերիւրուած է, իսկ մեծագոյն մասն մ'ալ քմահաճոյ մեկնութիւններ են նորանոր յաւելուածներով, հակառակ յոյն բնագրին, ինչպէս որ բաղդատելով առանձնաբար ասուցեցինք: Հակառակ կարծիքն՝ ինձ մեծ զարմանք կը պատճառէ. վասն զի մեծ անտեղութիւն է, ըստ իս, ենթադրել որ Մեծ Սոկրատայ թարգմանիչն՝ Փոքրին հետեւելով, ի նմին ժամանակի կարող եղած լինի այդքան աւանդը, — Սուրբ Աստուածի մասին, — դուրս թողուլ, և բոլորովին յոյն բնագրին համաձայնիլ. և այս իսկ է զարմանալի, երբ այդ խնդիրն՝ իւր ազգային եկեղեցւոյ մէջ իբրեւ հաւատոյ դաւանութիւն նկատուած էր: Արդ, այսպիսի շօշափելի փաստեր կը տեսնուին նաեւ հարիւրաւոր ուրիշ տեղերում. և այս պատճառաւ է, որ ես կ'ընտրեմ հերքել Սոկրատայ թարգմանութեան ժամանակը գծող կեղակարծ յիշատակարանի վաւերականութիւնը, քան թէ Մեծ Սոկրատի թարգմանութեան հնութիւնը:

Ըսած եմ երբեմն, և այժմ նոյնը կը կրկնեմ, թէ Մեծ Սոկրատայ թարգմանութիւնն իւր դժուարահասկանալի յունաբանութեամբ հանդերձ՝ չէր այնպէս, որ ինչ է այսօր. նա յոյժ այլանդակուած է զանազան պատճառներով, որոնք թէպէտեւ բոլորովին մեզ յայտնի չեն, սակայն և այնպէս յայտնաբերող վկայներ են նորա հնութեան: Արդեօք օր մի պիտի գտնուի՞ աւելի հին և աւելի կատարեալ օրինակ մի, որով ապացուցուի մեր ենթադրութիւնը, ինչպէս Աբրահամու

Ծղիթով լեռվին կը հաստատուին այսօր Փոքր Սոկրատի գրչագիր օրինակներու ահագին խանգարմունքը։ Դժուար է այս, բայց և ամենահաւանական։

Ի դէպս, կարեւոր կը համարիմ ծանուցանել այն ուրախալի անակնկալը, որ յօդուածս գրած ժամանակ ինձ հանդիպեցաւ։ Վանացս գրչագրաց Ցուցակին աչքէ անցընելով, գիտեցի որ Սոկրատայ օրինակներէն մին[1] համար կայ այս անճիշդ, բայց բարեբաղդ դիտողութիւնս. այսինքն թէ, առաջին էջը միայն՝ որ տարբեր գրչով գրուած է, կը համաձայնի Ա օրինակին, իսկ մնացեալն ամբողջապէս աննման է՝ ոչ միայն առոր, այլ և յոյն բնագրին։ Հետաքրքրաբար ուզեցի եղելութիւնն իմանալ, և բաղդատելով Տէր Մովսէսեանի հրատարակութեան հետ, տեսայ որ դա Մեծ Սոկրատն է եղեր, որուն առաջին երեք գլուխներն ինկած ըլլալով, անծանօթ ձեռք մը Փոքր Սոկրատի կցկտուր հատուածներով ուզած է լրացնել։ Դժբաղդաբար օրինակս կիսէն աւելի պակասաւոր է. այսինքն է, Բ գրքի ԼԴ գլխէն մինչեւ վերջը։ Սակայն [illegible]ւ բաղդաւոր է, որ կը լրացնէ Էջմիածնի օրինակի պակասը, և կ'ուղղէ ինչ ինչ թերութիւնները։ Գրչագիրս բաղդատելով Էջմիածնի և Երուսաղեմի օրինակներուն հետ, տեսանք որ առաջնոյն համաձայն կ'ընթանայ ընդհանրապէս, բացառութիւնները սակաւ են։ — Այս ընդհանուր երեւոյթէս կարող ենք եզրակացնել, որ գրչագիրս կամ ընդօրինակուած է Էջմիածնի օրինակէն, բայց երբ սորա Գ—Զ գլուխներն դեռ ինկած չէին, կամ լաւ եւս այն խմբին վերաբերեալ մի ուրիշ օրինակէ, որ համեմատութեամբ զերծ էր Էջմիածնի օրինակի ահագին սխալագրութիւններէն։ Ցամենայն դէպս, եթէ մէկ կողմէն այս գրչագրիս ունեցած սակաւաթիւ տարբերութիւններն և ուղղագրութիւններն միացուին Երուսաղէմեան օրինակի ուղղագրութեանց հետ, և միւս կողմէն այլ սրբագրուին Տէր-Մովսէսեանի տպագրական խոշոր սխալներն և սխալեալ ուղղագրութիւններն, Մեծ Սոկրատայ բնագիրն բաւաւականին վերականգնուած կ'ըլլայ։ Այս բանս թողլով ուրիշ առթի, մենք կը փափաքէինք, որ Սոկրատայ օրինակներ սա-

1. Մատենադարանիս ցուցակին համեմատ Բ օրինակն է այս, որ կը կրէ 1006 թիւը։ Ձեռագիրս յիշատակ է Խաչատրեան պարոն Յարութեան ի Նոր Ջուղայէ, յամին 1799։ Ձեռագիրս նօտրագիր է, Եւսեբիոսի եկեղեցական պատմութեան հետ կազմուած, որ միեւնոյն գրչով գրուած է։

ցող գրուածներն, — Ըստ հատարակաց, Ըստ մասնական, — Հանրին բաղդատել զանոնք Էջմիածնում եղած Հրատարակութեան հետ, որով Թերեւս Մեծ Սոկրատայ ուրիշ և աւելի կատարեալ օրինակներ եւս յայտնուին, որոնք պէտի կարենան մեծ լոյս սփռել թարգմանութեանս հնութեան վրայ: Չին ծառընտիրներու և Հաւաքմանց մէջ եւս կան անտարակոյս Մեծ Սոկրատէն հատուածներ. սոցա բաղդատութիւնք եւս մեծապէս նպաստամատոյց կարող են լինել անտարակոյս:

Կնիք բանից. մենք Մ. Խորենացւոյ պատմութեան մէջ մէկէն աւելի տեղեր կը գտնենք Սոկրատէն. այսինքն են՝ Արիոսի մոլորութեան, Վրաց դարձի պատմութեան, Կոստանդիանոսի և Կ. Պոլսի հիմնաւորց արարուածներուն, Սեղբետրոսի, Եփեսոսի ժողովոյն, Լիկիանոսի, Թէոդոսի և այլ բազում իրաց վերաբերեալ: Արդ, եթէ Սոկրատայ թարգմանութիւնն, ինչպէս ցոյց կու տայ Աբրահամ Մամիկոնէից եպիսկոպոսի Թուղթն, եղած է Ե դարու վերջին քառորդին, ապա ուրեմն կարելի է որ Մովսէս անկէ ուղղակի իսկ օգտուած ըլլայ, ինչպէս նաեւ Մեծ Սեղբեստրոսի Վարուց թարգմանութենէ մի[1]:

1. Ի վերջ քննադատութեանս ինչպէս ծանուցած ենք ԲԱԶՄԱՎԷՊԻ ընթերցողաց, որոց հետ Աբրահամու Թուղթն եւ առանձին գրքոյկով կը հրատարակենք, նշանակելով տարբ. լուսանցքի վրայ Փիլոքսենոսի Թղթի, այսպէս նաև Սոկրատայ տարբերութիւնները, վանայս գրչած օրինակաց համաձայն. Էջմիածնին արդէն ծանօթ են:

# ԹՈՒՂԹ

# ԱԲՐԱՀԱՄՈՒ ՄԱՄԻԿՈՆԷԻՑ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

### ԱՌ ՎԱՉԱԳԱՆ ԱՐՔԱՑ ԱՂՈՒԱՆԻՑ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎԱՍՆ ԺՈՂՈՎՈՅՆ ԵՓԵՍՈՍԻ

### ՈՐ ԵՂԵՒ Ի ԺԱՄԱՆԱԿՍ ԹԷՈԴՈՍԻ ՓՈՔՈՒ ՎԱՍՆ ԱՄԲԱՐՇՏԻՆ ՆԵՍՏՈՐԻ*

*Թուղթս հրատարակուած ժամանակ, կարելի էր դնել առընթեր առանձինն նաև Փիլոքսենոսի բնագիրը. բայց որովհետև սա, — բաց ի յառաջաբանէն և վերջաբանէն, — ընդհանրապէս նոյն է առաջնոյն հետ, այս պատճառաւ իսկ լաւ համարեցայ միայն հրատարակել զայն, արտատպելով սոյն խորագրի ներքև նախ Փիլոքսենի յառաջաբանը, որ կը պակսի Աբրահամու թղթին մէջ. իսկ մնացածին միայն տարբերութիւնները նշանակել ի ստորև թղթոյն Աբրահամու՝ Փ նշանատառիւ, զանազանելու համար Աբրահամու թղթի միւս երկու օրինակաց, այս ինքն են, Է Հաւաքման բանից նախնեաց և Բ Ճառընտրի տարբերութիւններէն, որք պիտի նշանակուին Է՛ և Բճ նշանատառիւք:*

ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ իրացս եղելոց՝ յորոց պահանջեցեր յինէն, ո՛վ սիրելի եղբայր, և նախանձաւոր ուղղափառութեան հաւատոց, զի՛ ապրեսցիս ի հաղորդութենէ ուրացողաց ճշմարիտ հաւատոյն. և որք անգիտանան, ծանիցեն՝ որպէս թէ խորշեսցին ի նոցանէ նմանապէս կորնչել ըստ Պաւղոսի գրեցելոցն, թէ ո՛չ միայն որ գործիցենն, այլ և որ կամակից լինին գործողաց, տացեն զնոյն վրէժս

* Փիլոքսենոսի վերնագիրն արդէն յիշած եմ ներածութեանս մէջ. ուստի աւելորդ համարեցայ վերստին դնել հոս:

դատաստանի. քանզի որ ատեն զամբարշտութիւն և զեղծագործութիւն, նա՛ և զամբարշտեալսն և զպղծագործսն թշնամի և ատելի համարեսցին. յիշելով զդաւթայն. Զատելիս քո, Տէր, ատեցի, և ի վերայ թշնամեաց քոց մաշեցայ։

Արդ, ինձ՝ պատմութիւն որ առաջի կայ անցանել բանիւ, նախ Աստուծոյ աղագին ստանալիք դատաստանին գործեցին յորդորումն, և զի մի պարտաւորեսցայց թագուցանել ի քումմէ սիրոյդ՝ ստուգապէս կամեցողէդ՝ ճանաչել զճշմարտութիւն իրացդ։ Երկրորդ անգամ՝ զի ոմանց պարտութիւն և լեզուաց յանդգնութիւն, որք ո՛չ երկնչին զչարն բարի ասելով, և ո՛չ զվայն ճանաչել, զխաւարն լոյս դնելով և զդառն՝ քաղցր, զի ըմբռնեսցին յանհրաժեշտ պատուհասէն՝ յԱստուծոյ բարկութենէն։ Երրորդ անգամ՝ զի որ յիմարաբարն առնեն պատասխանի՝ թէ յառաջ ժամանակաւք, և անգիտանամք զգործեցեալսն, միանգամայն և զգործողսն, վասն այնորիկ անպարտ եմք ի մեղաց, թէպէտ և հաղորդիմք յանդիմանեալ կշտամբիցն. և ծանիցեն զկորուստ անձանց՝ յայնպիսի ընդունայնաբան պատասխանւոյն։ Եւ ինձ առ այսոքիւք ոչինչ են դժուարագիւտ խնդիրք ցուցման. քանզի բաւական են լոկ միայն ամբարշտական գործոց եղելոց պատմութիւնք, իւրաքանչիւումեք առաջի կացուցանել զգիտութիւն ճշմարտութեան, յորում եթէ սուղ ինչ ճանաչել զաստուածպաշտութեանն, և զջերմութիւն նուազ գիտութեան Քրիստոսի հաւատոցն կացցէ, ծանուցանել վաղվաղակի. զի թէպէտ և անգիտութեամբ երբեք ընդ այնպիսի հայհոյչացն ի հաղորդութիւն եկեալ, այնուհետև իբրև ի միջոյ հրոյ ի բաց փախիցեն՝ զնոսա նզովելով, և ընդ խաչահանուանն փրկչին Քրիստոսի գրելով՝ Քանզի յաղագս այնպիսեաց Պաւղոս՝ առաքեալն Քրիստոսի՝ յառաջագոյն մարգարէացեալ ասաց. Վերստին ի խաչ հանեն զորդին Աստուծոյ, և դարձեալ խայտառակեն. այսինքն՝ զհաւատս նորա կործանել։ Իսկ եթէ ոք ապականեալ միտս և անփորձս ի հաւատս ո՛չ միայն պատմեալք, բաւական լիցի ածել զայնպիսին ի գիտութիւն ճշմարտութեան, և յամբարշտացն ի բաց զատանել։

Բայց, ապա այսուհետև ի խոստացեալն եկեսցուք, յորում և դու ինձ կամակից լինելով՝ ջերմագոյն և անզբաղ զլսելիսդ մատուցանես. զի կարասցես զիրացս զճշմարտութիւն ընտրել, և զիս անմեղադիր ի պարտեաց առնել, եթէ անգիտանալ ինձ թուեսցին՝ միւսանգամ ի ձեռն բանից կամ գրոց անդանդաղաբար հարցանել. վասն զի քեզ կարի զգուշալի և մեզ ո՛չինչ դանդաղելի, զիմաստասէր հարցուածս քոյ աստուածասէր մտացդ բժշկել։

Արդ * այս ինչ է, զոր հանդերձեալս[1] եմ պատմել։ Նիստորիոս ոմն անուն, եղեալ եպիսկոպոսապետ[2] Կոստանդնուպոլսի՝ ի ժամանակս բարեպաշտ[3] Թագաւորին Թէոդոսի, զոր անուանէր եկեղեցի, և մեծապէս փառաւք ընդ ամենայն աշխարհս[4] անուանի գործէր։ Սա, որ մինչդեռ ժամանակաւք զիշխանութիւն քահանայապետութեան[5] առեալ, և սիրելի ամենայն մեծամեծացն եղեալ, մինչև նմին իսկ Թագաւորին յառաջին դասու բարեկամացն կարգել. և ոչ ինչ Թիւրութիւն[6] երևեցուցեալ[7] ի վարդապետութեան ուղղան Հաւատոյ եկեղեցւոյ[8]։ Բայց զի[9] յղացեալ ունէր յինքեան[10] զամպարշտութեան աղանդոյն[11] ծնունդ, զՊաւղոսի Սամոսատացւոյ զսերմն ընկալեալ յերկուց ապականիչ գայլոց հաւտին Քրիստոսի[12] ի Թէոդորիտեանց[13] սուտանուն եպիսկոպոսաց կոչեցելոց, առ սակաւ սակաւ սկսաւ ի լսելիս ժողովրդեանն արկանել ի ծածուկ[14]։ Քանզի չև ևս կարծէր զչար զաղաւաղարկութիւն գործոյն իւրոյ կատարել և ի գլուխ հանել[15]։ Իսկ յորժամ բռնացեալ[16] զաւրացաւ, զմտաւ ածեալ էր[17] յոր[18] ինչ ձեռնարկիցէ՝ բաւական կարծելով զանձն՝[19] զգործն ի գլուխ հանել, այնուհետև զուրացութիւն ճշմարիտ հաւատոյն՝ իւրով ժանդարուխ[20]

* Ասկէ կը սկսի Աբրահամու խորագրուած թուղթն, և բուն նիւթոց և պատմական ընթացից գէթ համաձայն կ'ընթանայ Փիլոքսենոսի, ի բաց առեալ շարաբանութեան ամենահոծ տարբերութիւնները, զորս պիտի նշանակենք Փ. մենատառիւ։

1. Փ. հանդերձեալ եմ. ԲՃ. հանդերձեալք։

2. Փ. և ԲՃ. եպիսկոպոս։

3. Փ. ճշմարիտ և ուղղափառ. ԲՃ. չունի այս և յաջորդ երկու բառերը։

4. ԲՃ. երկիր։

5. Փ. քահանայութեան։

6. Փ. թերութիւն. ԲՃ. թիւրութիւն։

7. Փ. և ԲՃ. երևեցոյց։

8. Փ և ԲՃ. յուղղան վարդապետութեան հաւատոց եկեղեցւոյ։

9. Փ. բայց քանզի. ԲՃ. բայց վասն զի։

10. Փ. չունի։

11. Փ. յաղանդոյ զծնունդ. ԲՃ. զաղանդոյ զծնունդ։

12. Փ. չունի։

13. Փ. ի Թէոդորէ. ԲՃ. ի Թէոդորեանց։

14. Փ. և ԲՃ. ծածկաբար։

15. Փ. կարծէր կարել կատարել զաղաւաղարկութիւն չար խորհրդոյն իւրոյ. ԲՃ. կարծէր ի կարել կատարել զչար զաղաւաղարկութիւն խորհրդոց իւրոց։

16. Փ. և ԲՃ. զաւրացեալ և բռնացեալ։

17. Փ. չունի. ԲՃ. զմտաւ ածեալ էր։

18. Փ. զոր ինչ ձեռնարկեսցէ. ԲՃ. զոր ինչ ձեռնարկիցէ։

19. Փ. զանձն իւր՝ ի գլուխ հանել։

20. Փ. և ԲՃ. ժանդարուղխ։

և դիւանական բանիւքն յայտնապէս առաջի ամենեցուն բար-բառէր զհայհոյութիւնն։

Յայնժամ մեծապէս սգացեալ սրբոյ[1] եկեղեցւոյ, եթէ[2] զորպիսի պատերազմող[3] հօմիւ քրիստոսական հաւատին[4] պատառող և խռովիչ սնոյց[5]։ Բայց զի[6] միւս ևս այլ ա-նեցեալ զարգանայր յեկեղեցւոջ[7], սրբոյ[8] հոգւոյն յառաջ-գիտութեամբ, զնա[9] պատրաստեալ[10] առ ի պարտութիւն ա-ռանձնականն ապառազինութեան, Կիւրղոս[11] անուն կոչե-ցեալ՝ Աղեքսանդրու քաղաքին հայրապետ[12]։ Սովաւ[13] եկե-ղեցւոյ սրբոյ տրտմութիւն և պատերազմ չիջանէր[14]. քան-զի ծանուցեալ զնեստորի թիւր վարդապետութիւն, ի նորին[15] իսկ գրեցոցն՝ առ սուրբն Կիւրեղ[16]. և նա[17] փութացեալ[18] վչաակից սիրով դադարեցուցանել զնա յամպարիշտ հայ-հոյութենէն, գրելով առ նա թուղթ[19] ոչ միանգամ, այլ[20] երկիցս[21] և երիցս, և բազում անգամ առնելով զայս։ Եւ տեսեալ զնա յամպարշտութիւն եկեալ, ընդդիմակ[22] թուղթ-գրելով ուղղափառութեան[23] հաւատոյ, և ամենայն առաջին[24] վարդապետաց սրբոյ եկեղեցւոյ, որոց զժամանակս իւր-եանց ուղղափառ հաւատով[24] վարեալք, առ բոլորեցունց վարդապետն Քրիստոս[26] ճշմարիտ խոստովանութեամբ հա-սին։

Իսկ Կիւրղի[27] ոչ կարացեալ համբերել, զի մի պա-

1. Փ. չունի։
2. Փ. թէ։
3. Փ. և ԲՃ. պատերազ-մող և զհօմիւ։
4. ԲՃ. հաւատոյ։
5. Փ. և ԲՃ. ուսոյց հայ-հոյիչ բանսարկուն։
6. Փ. վասն զի։
7. Փ. ԲՃ. յեկեղեցւոջն։
8. Փ. ի սրբոյ հոգւոյն յառաջգիտութենէ։
9. Փ. զնա։
10. ԲՃ. պատրաստել։
11. Փ. Կիւրեղիոս. ԲՃ. Կիւրղիոս. ԷՀ. Կիւրղոս։
12. Փ. Աղեքսանդրացւոց քա-ղաքին քահանայապետ. ԲՃ. Աղեքսանդրու քաղաքի քահա-նայապետ։
13. ԲՃ. Նովաւ։
14. Փ. և ԲՃ. շիջաւ։
15. Փ. ի նոյն։
16. Փ. գրեցոյ առ իւրն. ԲՃ. գրեցոց առ իւրն Կիւրեղ։
17. Փ. և Կիւրեղ. ԲՃ. գրէ և նա։
18. Փ. գրէ։
19. Փ. և ԲՃ. չունին։
20. Փ. և ԲՃ. որ ոչ։
21. Փ. ԲՃ. այլ և։
22. Փ. ընդդիմակայ ԲՃ. ընդդիմակաց (ուղիղ է)։
23. Փ. ուղղափառութեան հաւատոյ. ԷՀ և ԲՃ. ուղղա-փառութեան հաւատոց։
24. Փ. և ԲՃ. ամենեցուն առաջնոց,
25. Փ. ուղղափառութեամբ. ԲՃ. ուղղափառութեան հաւա-տովք։
26. Փ. չունի։
27. Փ. Կիւրեղ։
28. Փ. կարաց։

տաճարս ի լռութենէն կրեսցէ*, դարձեալ գրէ առ նա[1] խստագոյնս և սաստիկս, զի թերևս այնոց[2] կարասցէ չիջոցանել[3] զսերմանեալսն ի նմանէ զչար որոմանց սերմ[4] յոմանց լսելիս. և իւրովք բանիւքն կամէր[5] երկոցունց կողմանցն, դեղատուին և դեղառելոցն[6] զփրկութիւն գործել: Իբրև ոչինչ աւգտել[7] ըստ նմանութեան կակուղ[8] բանիցն, հարկաւորի այնուհետև գրել առ նոյն ինքն երանելի Թագաւորն Թէոդոս[9] վասն[10] Նեստորի, թէ որպէս արտաքոյ ճշմարիտ հաւատոյ[11] ուսուցանէ և կործանէ զխոստովանութիւն սրբոյ եկեղեցւոյ, և զաւանդութիւն առաջնոց հարցն, ի սկզբանէ սրբոյ եկեղեցւոյ քարոզողաց: Եւ զի մի[12] զորս հայհոյութիւնն[13] կարաւտեալ ոք՝ յայլմէ լսել կամելով[14], աստցից համառաւտիւք[15] սուղ ինչ[16]: Ո՛չ ասէ պարտ և արժան է զսուրբ կոյսն Մարիամ՝[17] աստուածածին խոստովանել, այլ մարդածին. և ոչ զխաչեալն՝ Քրիստոս՝ Աստուած, այլ տաճար եղեալ բանին Աստուծոյ. և զԲանն ո՛չ խոստովանի[18] մարմին եղեալ ըստ աւետարանչին աւանդութեանց[19], այլ ի մարմին[20] բնակեալ. այսպէսքն Քրիստոս ի Մարիամայ ծնիցելոյ մարդոյ[21], զուգապատիւ զնա կամեցեալ ցուցանել, կամ նուազ[22] ինչ մեծագոյն ոմն[23] ի սրբոցն և ի հոգեկիր արանց: Բազում և այլ հայհոյութիւնս խաւսեցաւ, զորս յորժամ զսորա աղանդակցացն բան[24] ի մէջ բերցուք[25], պատմեսցուք զրովանդակն*:

* Փ. կրեսցէ, տեսանելով զհաւատն զազանակուր:

1. Փ. առ նա այնոցհետև:

2. Փ. և ԲՃ. գոնէ այնպէս:

3. Փ. արգելուցանել զնա և զսերմ. ԲՃ. արգելուցանել ըզսերմանսն:

4. Փ. զսերմանսիսն. ԲՃ. զչարաչարեալ սերմն սերմանեալ:

5. Փ. քաղել. ԲՃ. քաղեալ:

6. Փ. դեղատուին և դեղատուցելոյն. ԲՃ. դեղատուին և դեղառեցելոցն:

7. Փ. ցուցի[illegible] բռնեալ:

8. Փ. ողոքական:

9. Փ. և ԲՃ. չունի:

10. Փ. և ԲՃ. վասն Նորին Նեստորի:

11. Փ. ճշմարտութեան:

12. Փ. զի մի ոք:

13: Փ. և ԲՃ. հայհոյութիւնս:

14. Փ. և ԲՃ. կամեցեալ:

15. Փ. և ԲՃ. կարճառաւտիւք:

16. Փ. և ԲՃ. չունի:

17. Փ. և ԲՃ. Ո՛չ է. ասէ, արժան և պարտ զՄարիամ սուրբ կոյսն:

18. Փ. ԲՃ. խոստովանեալ:

19. Փ. և ԲՃ. աւանդութեան:

20. Փ. և ԲՃ. ի մարմնի:

21. Փ. և ԲՃ. չունին ենթագծուած բառերը:

22. Փ. նուազեալ:

23. Փ. և ԲՃ. միում:

24. Փ. և ԲՃ. զբանս:

25. ԲՃ. բերիցուք:

* Փ. և ԲՃ. զրովանդակն, բայց այժմ ի ձեռագրին դիմեսցուք:

Արդ՝ վասն զի էր[1] գրեալ որբոյն Կիւրղի առ Թագաւորն զհամբաւն և զլուր բանիցն խոստովանութեան. մինչեւ առ-կաւ և անդուստ ի քաղաքէն[2] հնչէր ի լսելիս նորա յաղագս Թիւր վարդապետութեան, զոր[3] Նեստոր յեկեղեցւոջն քարոզէր. գոչեաց[4] յանդիման զնա, և յառաջագոյն խրա-ւի ընդ նմա առանձինն բանս իմաստութեան, ըստ որում վայել էր իւրում հեզութեան[5], զի զշարժեալ[6] խռովու-Թիւն[7] Նորաձայն բանից վարդապետութեան նորա դադա-րեցուսցէ,[8] խրատ տալով ամենայն[9] ուղղափառ վարդա-պետացն զհետ երթալ աւանդութեանց հաւատոյ, ըստ ո-րում Նախնիքն ուսուցին[10]: Կարծէր[11] զծփեալ նաւն եկե-ղեցւոյ՝ յանկարծահաս[12] ալեացն անդէն[13] յառաջին նա-ւահանգիստն հասուցանել: Եւ չհաւանեալ նորա[14] ի բաց կալ[15] ի մոլար գիտութենէն, յաղագս մտացն սատանա-յական ամբարհաւանութեան, հայցէր[16] ի Թագաւորէն ժո-ղովոյ հրաման տալ լինել[17], զի երթեալ արասցէ պատա-խանի ամենեցուն, որք ընդդիմացին ի նմանէ ասացելոցն[18]. ի կործանութիւն բանիցն յուսալով, ճարտարութեամբ[19] յաղ-թել կամելով[20] ճշմարիտ[21] հաւատոցն:

Յայնժամ հրովարտակ արարեալ աստուածասէր[22] Թա-գաւորն[23] Թէոդոս ամենայն ուրեք առ եպիսկոպոս Նշա-նաւորս, զի միաբանութեամբ և առանց յապաղելոյ յԵ-փեսոս հասցեն ամենեքին[24]. զի զաւանդութիւն Նախնեաց[25] Հարցն՝ զգանձն ճշմարիտ հաւատոյ[26] ուղղափառութեան պա-հեսցեն: Եւ հրամանն վաղվաղակի կատարէր, և ժողովք

1. Փ. չունի:
2. Փ. ի քաղաքն. Բճ. ի քաղաքին:
3. Փ. Նեստորի՝ զոր. Բճ. զոր Նեստոր:
4. Փ. կոչէ:
5. Փ. թագաւորութեան:
6. Փ. շարժեցեալ:
7. Փ. ի Նորաձայն բանից նորա վարդապետութեան դա-դարեցուսցէ:
8. Փ. և Բճ զի խրատ:
9. Փ. և Բճ. ամենեցուն:
10. Փ. որում և Նախնագոյնքն ուսուցին: Բճ. ըստ որում և Նախնագոյնքն ուսուցին:
11. Փ. կամէր ծփել:
12. Փ. յանկարծահասեացն:
13. Փ. անդրէն.
14. Փ. նորա:
15. Փ. և Բճ. դառնալ:
16. Փ. հայցէ.
17. Փ. ժողովելոյ հրամանս տալոյ լինել:
18. Փ. Բճ. խաւսեցելոցն:
19. Փ. ճշմարտութեանն:
20. Փ. և Բճ. կամեցեալ:
21. Փ. և Բճ. չունին:
22. Փ. աստուածաշնորհ:
23. Փ. և Բճ. թագաւորին:
24. Փ. ամենեքեան յԵփեսոս հասցեն:
25. Փ. և Բճ. Նախահարցն:
26. Փ. հաւատոյն՝ զզուշութեամբ պահեսցեն. Բճ. հաւատոցն զզուշութեամբ պահ:

Հասանէր[1] ի ճառեցեալ քաղաքն[2], յիւրաքանչիւր քա-ղաքէ[3], վկայ լինել ճշմարտութեան, և ընդ ստութեան պատերազմելով. որոյ ժողովոյն[4] գլուխ և առաջնորդ էր երանելին Կիւրեղ[5]: Եւ Նեստոր հրաժարեալ[6] զերթալն և[7] պատասխանի տալ Կիւրղի և բովանդակ ժողովոյն, պատճառ[8] դնելով թագաւորին զերկիւղ դասոյ, որպէս թէ դարձեալ գործեալ իցէ նմա միաբանութեամբ ամենեցունց[9], զի սպանցի ի ճանապարհին. որ և ոչ ի խորհուրդս ժո-ղովոյն էր[10] անկեալ երբէք: Քանզի կարծեմ խորհրդոյ ծփեցոյ յինքեան[11], յերկուց ամպարիշտ մտածութեանց[12], ըմբռնեալ՝ չշարժէր[13] ի միաբանութիւն ժողովոյն հասանել, և զսերմանեալն ի բազմաց լսելիս զպիղծ հայհոյութիւնն ուրանալ և հնազանդել[14] առաջի ամենեցուն, ոչ հաւանէր յաղագս խրոխտ և աստուածամարտ կամացն: Եւ պատաս-խանեացն առաջի կալ[15] կասկածէր, զի մի գուցէ ի պար-տութիւն մատնեսցի. քանզի որում նոյն ինքն ճշմարտու-թիւն[16] սուտ[17] է, և բանաւորն անբան լինի: Լուծանէ ապա մեծին Դաւթի փոխանորդն, թագաւորն[18] Թէոդոս, ըզ-պատրուակեալ կեղծաւորութիւնն, և արքունի զաւրակա-նաւք ի ժողովն պատրաստէր զնա զգուշութեամբ հասու-ցանել: Եւ[19] չգտեալ այնուհետև պատճառս ինչ, թէպէտ և ոչ իւրայովք[20] կամաւք[21] գայ յԵփեսոս: Եւ մտեալ յա-պարանս իւր որ անդ կային, հրամայեաց զաւրականացն[22] զգուշութեամբ պահել զդուրսն, կարծիս տալով[23] ճշմարիտ լինել ստութեանն[24], զորս առ թագաւորն ասաց: Վասն զի

1. Փ. և Բճ. հասանէր փու-թով.
2. Փ. տեղին:
3. Փ. և Բճ. տեղւոջէ:
4. Փ. Բճ. չունին:
5. Փ. Կիւրեղիոս:
6. Փ. և Բճ. հրաժարէր.
7. Փ. և Բճ. առ ի:
8. Փ. պատճառ. Բճ. պատ-ճառն:
9. Փ. նենգ գործելոյ նմա միաբանութեանն զի:
10. Փ. և Բճ. չունին:
11. Փ. կարծէր ի խորհրդ-դոց սրտին ծփելոյ յինքեան. Բճ. կարծեմ ի խորհրդոց սըր-տին ծփեալ յինքեան:
12. Փ. ամբարշտական մտա-ծութեանցն:
13. Փ. Բճ. շարժէր:
14. Փ. հայհոյել:
15. Փ. պատասխանեացք յա-ռաջ գալ. Բճ. պատասխա-նացն առաջի կալ:
16. Փ. ճշմարտութեան:
17. Փ. ստոյն. Բճ. աստոյն:
18. Փ. Լուծանէ ապա թա-գաւորն և մեծի Դաւթի փո-խանակ. Բճ. փոխանորդն:
19. Փ. ոչ գտեալ:
20. Փ. Բճ. իւրովք:
21. Փ. չունի:
22. Փ. չունի:
23. Փ. Բճ. կարծեցեալ:
24. Փ. Բճ. ստութիւնն:

ամենք յեպիսկոպոսացն[1] ի կողմանցն արեւելից, որ յառաջագոյն ըմբռնեալն էին ի թիւրութեան[2] բանից Նորա, և Նախապատիւ զմարմնաւոր սիրելութիւնն քան զճշմարտութիւնն արարեալ, որք[3] թուով էին երեսուն և երեք, որպէս նոյն ինքն յիշատակարանքն ցուցանեն[4]։ Եւ գտաւցեալք ի միաբանութենէն Կիւրղի և յայլոց ուղղափառ եպիսկոպոսաց՝ առ Նեստոր դիմեն յապարանսն ազնուական լինել նմա կարծեցեալք[5]։ Որք յաստուածային վճռոյն յառաջագոյն յամենայն ազնուականութենէն Աստուծոյ մերկացեալք[6] մարդկային զաւրութեամբ[7] Աստուծոյ զաւրութեանն յաղթել կարծէին[8]. և յերկոցունց կողմանցն հաւատոյ յաղագս՝ անհաւատութեան սատանի պատերազմ յուզէր[9]։

Ցայնժամ ճշմարտութեանն կողման գլխաւորն[10] Կիւրեղ Աղեքսանդրացի. առաքէ առ Նեստոր երիս ոմանս ի պատուաւորաց[11] եպիսկոպոսաց. զի առ միաբանութիւնս[12] եկեալ՝ խնդրեսցուք զիրս վասն որոյ[13] ժողովս եղև։ Եւ Նեստորի[14] պատուիրեալ զաւրացն[15] մի ումեք թողացուցանել ի ներքս մտանել, դարձան անդրէն ոչինչ պատասխանի առեալ[16] զոր առաքեցեն առաքողացն։ Բայց սակայն հարկաւորեալք լինէին երկրորդ և երրորդ անգամ զնոյն առնել, ըստ հրամանի կանոնաց։ Բայց երթեալքն[17] յառաջնումն և յերկրորդումն առանց պատասխանւոյ դառնային. և եկեալ ասէին, եթէ անհնար է ումեք[18] զնա տեսանել։ Եւ գիտացեալ ժողովոյն զարհամարհութիւնն և զստամնայական բանսարկութիւնն[19] Նեստորի, զի և բանիւ անգամ ոչ արար արժանի[20] պատասխանւոյ. հրամայեն[21] բե-

1. Փ. որ ի։
2. Փ. ի թիւրութենէ. Բձ. ի թիւրութենէն։
3. Փ. չունի։
4. Փ. և Բձ. պատմեն։
5. Փ. ազնուականք նմա կամեցեալ լինել։
6. Բձ. չունի ամբողջ նախադասութիւնը. իսկ Փ. բառն Աստուծոյ միայն չունի։
7. Փ. Բձ. զաւրութեամբն։
8. Փ. կամէին։
9. Փ. և երկոցունց կողմանցն՝ հաւատոյն և անհաւատութեան՝ առ միմեանս սատիկ պատերազմէին. Բձ. և երկուցունց կողմանցն հաւատոցն յաղագս անհաւատութեանն պատերազմ էր։
10. Փ. ճշմարտութեան կողմն որոյ էր գլուխ։
11. Փ. և Բձ. ի պատուական արանցն։
12. Փ. միաբանութիւնն։
13. Փ. յորոյ յաղագս։
14. Փ. և Բձ. Նորա։
15. Փ. և Բձ. զաւրականացն։
16. Փ. առեալք։
17. Փ. երթեալքն որպէս։
18. Փ. թէ ումեք չէ հնար. Բձ. թէ ոչ հնար է։
19. Փ. բանսրկութիւնն։
20. Փ. արժանի ոչ արար։
21. Փ. ապա հրամայեցին. Բձ. չունի.

րել զԹուղթս[1] Կիւրղի երանելւոյ, զոր առ Նա խրատարար[2] և եղբայրաբար առաքեալ էր. և զնորին իսկ Նեստորի զոր ընթերցեալ գրեաց զհայհոյութիւնն[3], և զայլոց ուղղափառաց զբանսն[4] որ վասն հաւատոյ գրեալ[5] էին։ Եւ գտանի Կիւրղին միաբան ամենեցուն. իսկ Նեստորին՝ ընդդէմ նոցա[6] և ամենայն գրոց սրբոց։ Յայնժամ ի վերատին[7] զսուրբն՝ որ մինչև յորոշումն շնչոյ և մարմնոյ անցանէ[8] զբանն Աստուծոյ, կտրեն[9] զնա ընդ մէջ, և զպատիւ քահանայութեանն ի բաց բառնան[10]. և առաքեն յերկոցունց կողմանց[11] Թուղթս[12] առ Թագաւորն։ Բայց վտանգ ոչ սակաւ[13] կայր ի վերայ ուղղափառաց կողմանցն[14]. քանզի արգելեալք լինէին գրեցեալ թուղթքն ի նոցանէ[15] առ Թագաւորն հասանել. վասն զի որ սիրելիքն էին Նեստորի յարքունիսն, և դեղեալք յաղանդոյ նորա, հրաման ետուն զամենայն նաւահանգիստն[16] պահել[17], զի եթէ[18] գտանիցի[19] ոք՝ Թուղթ ունելով առ Թագաւորն բանիւ ժողովոյն ուղղափառաց[20] և Կիւրղի, ի բաց հանցեն[21] բռնութեամբ։ Իսկ զՆեստորի կողմանն ինքեանք իսկ[22] Թղթատարք լինէին առ Թագաւորն, և գրեալքն բազում զովութեամբ լինէին Նեստորին, և Կիւրղին և բովանդակ ժողովոյն՝ բազում պարսաւանաւք. զի խնդիր ոչ[23] այլ ինչ էր Նեստորի աւգնականացն, այլ զի միւսանգամ կարասցեն զնա դարձուցանել ի քաղաքն։ Եւ անգիտացեալ Թագաւորին զնենգութիւնն և զչերթալն նորա յանդիման ժողովոյն, և զլուծումն նորա ի քահանայական պատուոյն[24], ի Թշնամու-

1. Փ. զթուղթ երանելւոյն քեռայ Կիւրղի. Բձ. չունի։
2. Փ. խնամարար. Բձ. չունի։
3. Փ. զնորուն Նեստորին՝ որ ընդդէմ գրեաց ՚ի բազում հայհոյութեամբ. Բձ. չունի։
4. Փ. զբանս։
5. Փ. գրեալն էին. Բձ. չունի։
6. Փ. ամենեցուն և հակառակ նոցին. Բձ. չունի.
7. Փ. և Բձ. ի վեր առեալ
8. Փ. հատանէ. Բձ. Էջ. հատանէ անցանէ։
9. Փ. կտրեին։
10. Փ. բառնային։
11. Փ. և Բձ. կողմանցն
12. Փ. Թուղթս յԵփեսոսէ։ Բձ. ի թագաւորութենէն։
13. Փ. և Բձ. ոչ դուզնաքեայ։
14. Փ. ուղղափառ կողմանն. Բձ. ուղղափառաց կողմանն։
15. Փ. Թուղթք գրեցեալք ի նոցանէ. Բձ. Թուղթքն գրեցեալ ի նոցանէ։
16. Փ. նաւահանգիստն. Բձ. նաւահանգիստքն։
17. Փ. և Բձ. պահել, և զամենայն նաւսն քննել։
18. Բձ. թէ։
19. Փ. և Բձ. գտցի։
20. Փ. ժողովոյն ուղղափառացն։
21. Փ. հանիցեն։
22. Փ. և Բձ. չունին։
23. Փ. այլ ոչ ինչ։
24. Փ. ի քահանայութենէն.

թիւն դառնայր Կիւրղի՝ յընթեռնուլ զգրեալսն[1], քանզի էր յայտպիսի ուրինակաւ. Եթէ սուրբ և մեծ ժողովս[2] հրամայեցաւ[3] լինել ի ձեռմէ խնամակալութեանց վասն խնդրոյն Նեստորի[4], քննեցաք և գտաք զնա[5] խոստովանելով[6] նմանապէս վարդապետաց եկեղեցւոյ, և ուղղութեան առաջնոցն, և հրամանաց սուրբ գրոց[7]. իսկ Կիւրեղ[8] զրպարտող սորա և նախանձաւոր գտաւ[9]:

Առաւել զարմանալ պարտ է[10] ընդ ամպարշտութեան[11] աւգնականսն, զի կամէին զեղծել[12] զհամաշխարհական իրս. զի թէ[13] ոչ ի մարդկանէ, սակայն յԱստուծոյ[14] յայտնեալ լինէր: Եւ քանզի ոչ եր հնար[15] զգործեցեալսն ի[16] վերայ Նեստորի ի գիտութիւն ածել[17] թագաւորին, շնչեալ[18] Հոգւոյն Սրբոյ երանելւոյն Կիւրղի եպիսկոպոսապետին, խորհուրդ իմն[19] ըստ իւրում իմաստութեանն ի կիր[20] արկեալ. եղեգն հերձեալ, չափ գաւազանի ունելով, և գրեալ թուղթ, և ի փորուածին եդեալ պնդէր, և ումեմն իմաստնոյ և յառաքինի երիցանց՝ հանդերձ մուրացկի զգեցուցեալ, և զայն ի ձեռն եդեալ՝ առաքէ առ մեծն Դալմատիոս, որ ի ժամանակին յայնմիկ փայլէր[21] սուրբ Հոգւոյն[22] ճառագայթիւք. որոյ քառասնամեայ ժամանակ[23] ոչ էր[24] փոխեալ զոտս[25] ընդ սեամս խցկանն[26] իւրոյ, յորում ինքն բնակէր[27]. բազում և այլ[28] վարս ճգնութեան ունէր յան-

1. Փ. ԲՃ. յընթեռնուլն զգրեալսն:
2. Փ. և ԲՃ. էջ. ժողովսար:
3. ԲՃ. չունի:
4. Փ. ի ձեռմէ խնքնակալութեանց լինել յեփեսոս՝ վասն Նեստորի խնդրոյն. ԲՃ. եղև ի ձեռմէ խնամակալութենէդ. էջ. վասն խնդրոյն Նեստորի:
5. Փ. ԲՃ. զնա:
6. ԲՃ. խոստովանեալ:
7. Փ. և ԲՃ. գրոց սրբոց:
8. Փ. Կիւրղիսի. ԲՃ. զԿիւրեղ:
9. ԲՃ. գտաք:
10. Փ. և ԲՃ. էր:
11. Փ. և ԲՃ. ամբարշտութեան:
12. ԲՃ. զեղծել:
13. Փ. եթէ:
14. ԲՃ. առ յԱստուծոյ:
15. Փ. և ԲՃ. ոչ հնար կայր:
16. Փ. և ԲՃ. ի ժողովոյն ի վերայ Նեստորի:
17. Փ. և ԲՃ. առնել:
18. Փ. Շնչեալ ի Հոգւոյն սրբոյ Կիւրղի եպիսկոպոսի: ԲՃ. Շնչեալ ի Հոգւոյն սրբոյ երանելւոյն Կիւրղի եպիսկոպոսապետի. էջ. ի Հոգւոյն սրբոյ:
19. Փ. և ԲՃ. իմն արժանի:
20. Փ. ի միտ արկեալ. ԲՃ. ի միտ արկանել:
21. Փ. և ԲՃ. յաշխարհին փայլէր:
22. Փ. հոգւոյն սրբոյ:
23. Փ. ժամանակս:
24. Փ. չէր:
25. Փ. և ԲՃ. զոտս իւր:
26. Փ. սեամս դրանց խցին. ԲՃ. ընդ դրանն խցկանն:
27. Փ. բնակեալ էր:
28 Փ. և բազում այլ ինչ:

ձին խարում։ Եւ Հասեալ երիցուն[1] ի դուրս [2] վանացն, աղաչէր զդռնապանն, զի ազդ արասցէ ծերոյն որպէս թէ.[3] ամն ի տառապելոց կամի տեսանել զքեզ[4]։ Եւ չհաւանեալ դռնապանին զայս առնել[5], ասէր. Ո՞վ[6] Դու, կամ ուստի. ինձ ոչ[7] կարելի է զայդ առնել[8], և քեզ անհընար[9] է զնա տեսանել։ Եւ յոյժ թողացուցանել[10] երիցուն աղաչանաց, Հարկաւորեալ լինի[11] դռնապանն, և Համարձակեալ լինի[12] ասել ծերոյն։ Եւ նա միանգամ[13] ի լսելն՝ Հրամայեաց[14] ի ներքս ածել, ծանուցեալ աստուածային շնորհաւքն վասն որոյ եկն[15]։ Եւ նախ ի տեսանելն[16] զնա՝ ասէ. Բարի եկիր, Տէր երէց. և տուեալ նմա կատարել զաղաւթս, փաղփաղակի զգաւազանն եղեգնեայ յինքն խընդրէր[17]. և լուծեալ պկապն, զերծեալ թուղթն արտաքս հանէր[18]։ Եւ ապա ելեալ ի խցկէն[19] փութապէս, զորոյ զկնի[20] գնացեալ եղբայրութեանն, Հասանէին[21] ի դուռն[22] քաղաքին։ Եւ չնչեալ[23] մուտ Համբաւոյ նորա, շարժէր զամենայն[24] քաղաքն, ելանել[25] ընդառաջ[26] մեծամեծաց մինչև ի[27] փոքունս՝ լապտերաւք և ջահիւք։

Ազդ լինէր[28] թագաւորին գալուստ նորա։ Յայժամ[29] զարՀուրեալ մեծաւ[30] տագնապաւ, անկանի[31] յոտս նորա թագաւորն[32], միանգամայն և զկին մաղթելով[33] ուսանել կամեցեալ. Զի՞նչ այնչափ[34] մեծագոյն է, ասէ, ո՞վ կենդանի

1. Փ. նա Բձ. նորա։
2. Փ. դրունս. Բձ. դուռն։
3. Փ. երկ. Բձ. չունի։
4. Փ. զնա։
5. Փ. առնել զայս։
6. Փ. Ո՞վ ես դու, ասէ. Բձ. Ո՞վ դու, ասէ։
7. Փ. ո՛չ ինչ։
8 Փ. առնել զայդ։
9. Փ. և Բձ. անհնարին։
10. Փ. և Բձ. և ո՛չ թողացուցեալ աղաչանաց երիցուն։
11. Փ. հարկեցեալ լինէր. Բձ. հարկեալ.
12. Փ. և Բձ. համարձակի։
13. Փ. և Բձ. միանգամայն։
14. Փ. հրամայէ փութապէս. Բձ. հրամայեաց փութանակի։
15. Փ. վասն որոյ եկն աստուածային շնորհին. Բձ. վասն որոյ եկն աստուածային շնորհաւքն։
16. Փ. և Բձ. չունին։
17. Փ. խնդրեաց։
18. Փ. չունի։
19. Փ. խցկն։
20. Փ. զհետ։
21. Բձ. հասանէր։
22. Փ. դրունս։
23. Փ. և Բձ. հնչեալ։
24. Փ. շարժեցաւ ամենայն։
25. Փ. ելանէին։
26. Փ. ընդ առաջ նորա։
27. Փ. և Բձ. ցփոքունս։
28. Փ. եղև։
29. Փ. և։
30. Փ. մեծ։
31. Փ. և Բձ. եկեալ անկանի։
32. Փ. չունի։
33. Փ. զեկն նորա մաղթել։
34. Փ. այսչափ. Բձ. այդչափ։

մկայ Քրիստոսի, յորմէ բռնադատեալ՝ զայնքան[1] ժամանակաց սահման հարկեցար[2] լուծանել։ Իսկ երանելին ասէ. Ինձէն իսկ[3] իմով գալովս ծանիցես զիրացն[4] ստուգութիւն. զի[5] Քրիստոս վերստին ի հրէական թերահաւատութենէն խաչի, և դու խաղաղութեամբ յաթոռ թագաւորութեանդ[6] նստիս[7]. Նեստորիոս զանկապուտ զանձուն աստուածութիւն ի[8] նախահարցն՝ ուրացեալ կամի մատնել[9], փոխանակ պահպանութեան մատնիչ եղեալ, և քո սիրելիք. եպիսկոպոսութեան պատուով պերճացեալ՝ զեր ի վերոյ կամի լինել սրբոյ եկեղեցւոյ խոստովանութեան։ Եւ որում պարտէր իբրև հովիւ խնամակալ լինել, այժմ անխնայ կոտորել ձեռնարկէ[10] գայլաբար, ի քո սիրելութիւնդ ապաւինեալ[11], զնի և զանթերի հաւատն չարժել և կիսացուցանել կամեցեալ։ Իսկ հեզն և բարեպաշտն Թէոդոս[12] ասէ. Գիտէ տէրն իմ Քրիստոս, զի անգիտանամ զասացեալդ ի ձերմէ[13] սրբութենէդ. բայց ծանո՛ ինձ զճշմարիտն աղաչեմ։ Եւ նորա հանեալ զթուղթն մատուցանէր ասելով. Ընթերցիր զայդ, և հասանես[14] ի վերայ ճշմարտապէս։ Եւ նորա ընթերցեալ՝ ասէ. Ոչինչ յայսցանէ յիմ գիտութիւն եկն մինչև ցայժմ[15], այլ սորին հասկանան։ Զի էր գրեալ աւրինակ զայս, թէ[16] Սուրբ և մեծ ժողովս, որ յԵփեսոս քաղ[17] հրամանի քում[18] ժողովեցաք, ստորագրեցաք երիցս անգամ զա Նեստորիոս, զի իւրոց բանիցն խոստեցելոց՝ եկեալ[19] պատասխանի արասցէ. և նորա անհամարհեալ՝[20] և ոչ պատասխանի տալոյ արժանի վարկեալ[21]։ Այս հարկաւորեալ՝ զգրեալ բողոքսն Նեստորի որ առ Կիւրեղ եպիսկոպոս ընթերցաք[22].

1. Փ. զայլչափ. ԲՃ. զայդչափ։
2. Փ. կարացեր։
3. Փ. և ԲՃ. չունին։
4. Փ. և ԲՃ. զիրացդ։
5. Փ. չունի։
6. Փ. թերահաւատութենէ։
7. ԲՃ. նստիցես։
8. Փ. նախահարցն։
9. Փ. կամի մատնել ուսղակաց։
10. Փ. ձեռնարկեալ կոտորէ։
11. Փ. ապաստանեալ. ԲՃ. ապաստան եղեալ։
12. Փ. և ԲՃ. չունին։
13. Փ. և ԲՃ. ի քումմէ։
14. Փ. հասցես ի վերայ ամենայնի. ԲՃ. հասանես ի վերայ ամենայնի։
15. Փ. և ԲՃ. ասէ։
16. Փ. և ԲՃ. էրէ։
17. Փ. որ ըստ։
18. Փ. ձեր. ԲՃ. ձերում։
19. Փ. եկեսցէ յատեան։
20. Փ. արհամարհեալ զառաքելովքն. ԲՃ. արհամարհեալ զառաքեցելովքն։
21. Փ. և ոչ բանիւ անգամ պատասխանի առնելով. ԲՃ. և ոչ բանիւ անգամ պատասխանի առնել վարկաւ։
22. Փ. հարկաւորապէս զգրեցելոյ բողոքն որ առ Կիւրեղ եպիսկոպոսն. ԲՃ. այս հարկաւորապէս զգրեցեալ բողոքն

. ծանուցեալ զամպարշտութիւն վարդապետութեանն նորա, ընդվզեցաք զնա[1], և հեռի յեպիսկոպոսութեան պատուոյն սրբոյ ի ձեռն Հոգւոյն սրբոյ, որ մինչև յորոշումն[2] շնչոյ[3] և մարմնոյ հատանէ անցանէ. և ի բաց խզեցաք յամենայն եկեղեցական[4] ուխտէ, զոր քո թագաւորութիւնդ[5] հրամայեսցէ լինել արտաքոյ[6] սահմանաց, ոչ միայն յիւրմէ[7] քաղաքէն, այլ և այլոց բազում[8] քաղաքաց, զի մի ապականեալ կորուսցէ զոմանս յանփորձից առ հաւատս իւրոյ չարաթոյն վարդապետութեանն[9]: Զայս լուեալ աստուածասէր Թագաւորին՝ զարմանայր[10], և սրբոյ ծերոյն պատասխանի առնէր. Ո՛չինչ ցայժմ[11] յայտնեաց զխոտութիւն եղև ինձ, այլ սորին հակառակն: Եւ վաղվաղակի առաքէ յեփեսոս[12], զի յերկոցունց կողմանցն առ նա[13] հասցեն որք ստուգապէս զգործեցեալսն[14] եկեալ պատմեսցեն: Եւ առաքեն երեք եպիսկոպոսք[15] ի կողմանէ կիւրղի[16], և երեք եպիսկոպոսք ի կողմանէն[17] Նեստորի[18]. և նոքա[19] գիտէին զՆեստոր ի քահանայական իշխանութենէն արտաքս ընկեցեալ, խորհեցան զայն ինչ[20] հնարել[21] իւրոյ կողման եպիսկոպոսքն, զի անդէն[22] ի քաղաքն դարձուսցեն զնա, ի ձեռն հաւանական և քաղցր բանից պատրել կամեցեալք[23] զառաքեալսն ի կողմանէն կիւրղի[24]: Եւ հասեալք առ Թագաւորն՝ սկսան վասն հաւատոյ հարցանել, եթէ Վասն է՞ր իրք է վիճումն ժողովոյն, և Կիւրեղ զի՞նչ[25] ընդդիմանայ Նեստորի պատժել[26], զի յորժամ լսիցեն՝ փոյթ ընդ փոյթ[27],

Նեստորի որ առ Կիւրեղ եպիսկոպոսն:

1. Փ. չունի այս խօսքերը:

2. Փ. ԲՃ. ցորոշումն:

3. Փ. և ԲՃ. հոգւոյ:

4. Փ. և ԲՃ. չունին:

5. Փ. և ԲՃ. ԷՀ. զոր և քո բարեպաշտութիւնդ:

6. Փ. արտաքս:

7. Փ. և ԲՃ. իւրոյ:

8. Փ. և ԲՃ. չունին:

9. ԲՃ. իւրով չարութեան վարդապետութեամբն.

10. Փ. և ԲՃ. զարմացեալ:

11. Փ. ոչ մինչև ցայժմ. ԲՃ. սակ, ոչ որ ինչ:

12. Փ. առաքեն վաղվաղակի յեփեսոս:

13. Փ. անդր. ԲՃ. ի նա:

14. Փ. և ԲՃ. զգործեցեալսն անդր. ԷՀ. անդ:

15. Փ. եպիսկոպոս:

16. Փ. ի կողմանէ կիւրղին:

17. Փ. ԲՃ. չունին:

18. Փ. ի Նեստորին. ԲՃ. ի Նստորին:

19. Փ. և ԲՃ. քանզի:

20. Փ. և ԲՃ. զամենայն ինչ:

21. Փ. հնարեալ:

22. Փ. և ԲՃ. անդրէն:

23. Փ. ԲՃ. կամեցեալ:

24. Փ. ի Կիւրղի կողմանէն. ԲՃ. Կիւրղի կողմանէն:

25. Փ. զի՞:

26. Փ. զանգիտութիւն պատճառեալք. ԲՃ. զանգիտութիւն պատճառալ:

27. Փ. և ԲՃ. ընդ փոյթ:

եթէ[1] և մեք այսպէս հաւատամք, որպէս[2] ժողովն և Կիրեղ. և Նեստոր[3] այսպէս հաւատայ. և որ ոչ այսպէս հաւատայ և խոստովանի[4], եղիցի նզովեալ[5]: Բայց որ ամենայնի նախատեսն է Հոգին սուրբ[6], ազդէ[7]՝ բանս ի բերան[8] նոցա դնելով զինչ պարտ և[9] արժան է[10] խօսել: Եւ զայս պատասխանի սկսեալ առնել[11], եթէ Զմեզ սուրբ[12] և մեծ ժողովն ոչ առաքեաց[13] վասն հաւատոյ մրցման, այլ զհաստեալ վճիռն ի վերայ Նեստորի[14] դրով հանդերձ եռուն ցմեզ, զի կայցուք առաջի Թագաւորիդ: Եւ զայս առացեալ ընկենուին[15] զգրեալսն առաջի Թագաւորին: Եւ յորժամ հրամայեաց ընթեռնուլ, ի[16] վերայ հասեալ տրամեցաւ վասն բշնամանեացն[17] կորստեան. և[18] իբրև զմարդասէր և հեզ՝[19] լռեայր, եթէ հնար[20] իցէ, ապաշխարեցուցանելոյ: Եւ պատուիրեաց ուրումն[21] ի սիրելի իշխանացն, որում անուն էր Սքողիստիկոս[22], որպէս թէ հնար իցէ հաւանեցուցանել զեկեալ եպիսկոպոսունսն, երթալ աղաչել զսուրբ ժողովն առ ի յընդունել զՆեստոր: Իսկ նա ելեալ յերեսաց Թագաւորին սկսաւ իշխանաբար խօսել ընդ նոսա. Եղբայք, ասէ[23] խաղաղութիւն արարէք, և զխռովութիւն եկեղեցւոյ[24] ի բաց բարձէք. և զՆեստոր[25] ընկալարուք, զի դարձցի յիւր տեղի. և իւրաքանչիւր ոք՝ զիւր աթոռ և զեկեղեցի հանդարտութեամբ կալցի[26]: Իսկ նոցա պատասխանի տուեալ ասեն. Զոր սուրբ Հոգին կըարեաց և ընկեաց ի բաց[27], ոչ եւս հնար է զնա ումեք կենդանացուցանել[28]: Յանժամ զայրացեալ իշխանն՝ ասէ. Ե-

1. Փ. չունի. ԲՃ. թէ:
2. Փ. և ԲՃ. ըստ որում:
3. ԲՃ. Նստոր:
4. Փ. և ԲՃ. խոստովանեսցի:
5. Փ. նզովեալ եղիցի. ԲՃ. նզովեալ լիցի:
6. Փ. սուրբ Հոգին:
7. Փ. և ԲՃ. ազդէ աստանաշր:
8. Փ. և ԲՃ. բերանս:
9. Փ. և ԲՃ. չունին:
10. Փ. և ԲՃ. էր:
11. Փ. առնելով սկսանին:
12. Փ. ի սուրբ:
13. Փ. ԲՃ. առաքեցին:
14. ԲՃ. Նստորի:
15. Փ. ԲՃ. ընկենուն:
16. Փ. ԲՃ. և ի վերայ:
17. Փ. ԲՃ. տրամեցաւ յոյժ յաղագս բշնամանեցելոյն:
18. Փ. չունի:
19. Փ. ԲՃ. զհեզ:
20. Փ. ԲՃ. հնար իցէ:
21. Փ. ԲՃ. միում:
22. Փ. Սքողաստիկոս. ԲՃ. Սքողոստիկոս:
23. Փ. ասէ. Եղբայք:
24. ԲՃ. եկեղեցեացդ:
25. ԲՃ. զՆստոր:
26. Փ. ունիցի. ԲՃ. կալցէ:
27. Փ. ԲՃ. ի բաց ընկէց:
28. Փ. ոչ ումեք հնար է զնա կեցուցանել:

թէ ոչ Նեստոր[1] դառնայ ի տեղի իւր՝ զկնի երից աւուրց, և ո՛չ խորտակեսցիր[2] ոք ի ձէնջ դարձցի[3] յիւր տեղի։ Եւ մի ոմն ի նոցանէ շարժեալ ի Հոգւոյն սրբոյ ազդմանէ, ասէ. Եթէ դու յետ երից աւուրց ընդ իշխանս ի հրապարակս պերճասցիս, ո՛չ խաչեալն Աստուած է, և ո՛չ մեք նորա եպիսկոպոսք։ Եւ նոյնժամայն ի սաստիկ ջերմութենէ ըմբռնեալ, դառնայր ի պաղատն[4] մեծաւ տագնապաւ, ի դրունս[5] մահու հասեալ։ Ջորմէ լուեալ Թագաւորն[6] յառաւել տրտմութիւն ընկղմեցաւ. և հասեալ առ ոտս եպիսկոպոսին՝ բազում աղաչանաւք մաղթէր, զի մի՛ մինչև ի սպառ պատուհասան եղեալ՝ զսիրելին ի կենցաղոյս բարձցէ[7]։ Իսկ նոցա զանձարգելի զվճիռ պատուհասին տեսեալ[8] ի Հոգւոյն սրբոյ, ասեն. Ո՛վ Թագաւոր, դադարեաց[9] յայդմ խնդրոյ[10], մի՛[11] գուցէ և դո՛ւ ըմբռնեսցիս ի պատուհաս յանցանաց նորա[12]։ Բայց ըմբռնեալն փութո՛վ[13] վախճանի զկնի երից աւուրց, չարաչար մահուամբ, ըստ ասացելոյ[14] ճշմարիտ եպիսկոպոսին։ Եւ զարհուրեալ Թագաւորն՝ առաքեաց գրով հանդերձ[15] ըստ[16] ժողովոյն հրամանի կՆեստոր[17] աքսորել, և Ներսէս փութապէս գալ յարքունիսն, զի տեսեալ զնա[18] ուրախասցի[19], որպէս և եղև իսկ, և բերկրեցան ի միմեանց տեսչենէն[20]։ Բայց էր ինչ աստանաւր և[21] յիշատակի ար-

1. Փ. թէ Նեստոր ո՛չ դառնայ. ԲՃ. եթէ Նեստոր ոչ դառնայ։
2. Փ. ԲՃ. չունին։
3. Փ. դառնայ։
4. Փ. ԲՃ. յարքունիս։
5. Փ. ի դուրս։
6. ԲՃ. թագաւորին։
7. Փ. զի մինչև ի մահ պատուհասեսցես զսիրելին, և ի կենցաղոյս բարձցես. ԲՃ. զի մի մինչև իսպառ պատուհասեալ զսիրելին ի կենցաղոյս բարձցէ։
8. Փ. զանարգելին և զվճիռ պատուհասին ժամանեցեալ ի ձեռն. ԲՃ. զանարգելայ և զվճիռ պատուհասին ժամանեցեալ ի ձեռն։
9. Փ. ԲՃ. դադարեա՛։
10. Փ. ԲՃ. խնդրոյդ։
11. Փ. ԲՃ. զի մի՛։
12. Փ. ԲՃ. նորա յանցանացն։
13. Փ. փութապէս վճարի. ԲՃ. վախճանիւր։
14. Փ. ԲՃ. ասելոյ։
15. Փ. ԲՃ. չունին։
16. Փ. ըստ սուրբ. ԲՃ. ըստ ամենայն։
17. ԲՃ. զՆեստոր։
18. Փ. ԲՃ. չունին։
19. Փ. ուրախասցին մեծապէս. ԲՃ. ուրախասցին փութապէս։
20. Փ. ի միմեանց, և արարին խաղաղութիւն՝ ըստ հրամանի թագաւորին. ԲՃ. ի միմեանս և արարին խաղաղ։
21. Փ. չունի։ ԲՃ. հոս կ'աւարտի, ըսելով. «փառաւորելով զամենասուրբ զԵրրորդութիւնն այժմ և միշտ յաւիտեանս յաւիտենից. ամէն։»

ժանի, այլ վասն առաջիկային՝ յոր փութամք, այլում[1] ժամանակի թողցուք՝ եթէ ումեք փափաքելի թուեսցի[2]։

Արդ[3] այսոցիկ այսպէս եղելոց, դառնամ յիւրաքանչիւր տեղիս՝ յեպիսկոպոսաց ժողովոյն[4], և զառաջին[5] հաւատոյ ուղղափառութեան հաստատեն[6], և ամենայն ուրեք եկեղեցիք պայծառացեալք ի ձեռն ճշմարիտ բացափայլ խոստովանութեան հարցն սրբոց[7]. և եկեղեցւոյ մանկունք՝ սուրբ և աննենգ կաթամբ աստուածային[8] բանիւն սնեալք և անցեալք[9] փառազարդեալք շքեղանային, որչափ եկեղեցւոյ պատկն կենդանի էր յաշխարհի բարեպաշտ թագաւորն Թէոդոս. քանզի խրատեալ և վարժեալ էր ուղղադաւան բանիւ հաւատոյ սրբոց հարցն, և ամենայն բարեձև կարգօք. և * զի բազում են թագաւորին գովասանական բանք, ի բազմաց հնարից իմաստնոց գրով թողեալ յիշատակ։

1. Փ. յայլում։

2. Փ. թուեսցի գիտել։

3. Փ. Արդ զկնի։

4. Փ. դառնայ իւրաքանչիւր որք յիւր քաղաք ի ժողովեալոց եպիսկոպոսացն։

5. Փ. և զառանձինն հաւատ։

6. Փ. վարդապետեն։

7. Փ. սրբոց, աւանդեալ հաւատն հաստատութեան անոյր։

8. Փ. աստուածայնոյն։

9. Փ. այլ զի առաջի կայր աշխարհի զմեծ և զանմխիթար սուգն տեսանել վասն մեղաց. զկնի սուղ ինչ ժամանակի երանելին Կիւրեղ հրաժարեալ ի կենաց՝ առ իւր տէրն հասանէր. զհանդիսիցն յերկրի փոխարացեալ ժառանգել ըզպսակ ի փառս ամենասուրբ Երրորդութեան Հաւր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։ (վերջ Փիլոքսենոսի ընծայուած թղթին)։

* Այս և յաջորդ տողերն, որով կը սկսի Թէոդոսի գովասանութեան ներմուծումն՝ Արրահամու թղթին մէջ, յերիւրուած է Սոկրատայ (ըստ Մեծին՝) ԻԱրդ. իսկ ըստ Փոքրին՝ ՃԽԸ գլխում տրուած տեղեկութեան վրայ, բայց ուելի մաքուր, շարաբանութեամբ. որուն համար և նորագրուած խօսքերն այնքան աչքի զարնող կերպով կը տարբերին Սոկրատի յատակայ խօսքերէն. «Եւ բազումք ի վերայ այսպիսի եղելոցս ստեղծանէին թագաւորին բարեբաղդութեան ի գովութիւն պատուոյ և փառաց»։ Ուստի եթէ Փոքր Սոկրատի խմբագիրն եղած ըլլար ընաքաղ Աբրահամ Մամիկոնեանի թղթի այն մասին, պէտք է որ վերոյիշեալ ենթադրուած աղերսն և նոյնութեամբ արտադրած ըլլար անկէ. այսպ ուրեմն հետևութիւնն յայտնի է։ Այս այսպէս լինելով հանդերձ՝ զարմանք է տեսնել, որ Փոքր Սոկրատայ խմբագիրն՝ ՃԿԱ գլխում, — ուր կը խօսուի Եփեսոսի ժողովի մասին, — խառնելով Մեծ Սոկրատէն՝ յանկարծ Աբրահամու թղթի առաջին մասէն տեղի մի մէջ բերած է (յէ

### ԹՈՒՂԹ ԱԲՐ.

* Այլ ես զԹագաւորին գովասանութիւն ոչ պաճուճեալ բանիւ, այլ ճշմարտութեամբ զեղեալս Թագաւորին պատմել յօժարիմ. քանզի լուեալ զնորայն զայնքան բարեացն զեղեալսն և ծածկել զնա ոչ սակաւ վարկանիմ, և պատմել` չափ մեծ լսողացն։ Եւ արդ ի սակաւուց որքան է` ձառեմ, զի զամենայն ասել` ոչ է հնար, որ յերևելիս և յաներևոյթսն էր զարդարեալ բարի գործովք, ի ծննդենէ մինչև ի վախճան։ Եւ զի ի թագաւորական զահոյս էր ծնեալ և սնեալ փառաւք և պատուով, ոչ ըստ այնմ ունէր գոռոզութիւն կամ ամբարտաւանութիւն. այլ էր բարձր խորհրդովք` առ վայ-

### ՓՈՔՐ ՍՈԿ.

Բայց ես ոչ զԹագաւորին առեղծական պաճուճեալ բանիւ[1] զգերազանցութիւնն կամիմ առնել, որոյ գովութիւնն ոչ ի մարդկանէ միայն էր, այլ և յԱստուծոյ։ Վասն որոյ ես պարզ բանիւ և[2] ճշմարտութեամբ զեղեալսն Թագաւորին յիշատակել յօժարիմ, զի լսել զայնքան զնորա բարեացն զեղեալսն որ յետ մերն ոչ սակաւ զնաս[3] վարկանիմ[4]. և պատմել` չափ մեծ է լսողացն։ Եւ արդ սակաւուց որքան է ձառեցուք[5], ոչ զամենայն ասել, զի ոչ է հնար` որ յերևելիս և յաներևոյթս էր յարդարեալ բարի գործովք, ի ծնընդենէն մինչև ցվախճան. և զի ի թագաւորութեան ծնեալ

639) Նեստորի մոլորութեան նկատմամբ, որ յունին մէջ ես չկայ։ Արդ` այս բանս ցոյց կու տայ մեզ, թէ ինչպէս Սոկրատայ Թարգմանութիւնն աւելի հին է քան Աբրահամու թուղթը, այսպէս այլ վերջինս հնագոյն է քան Փոքր Սոկրատի մէջ ներմուծուած յաւելուածներն, և թէ այդ յաւելուածները միայն կարելի է Է դարու Փիլ. Տիրակացւոյն ընծայել, և ոչ Սոկրատի թարգմանութիւնը։

* Աստի մինչև վերջ Փոքր Սոկրատին հետ նոյնապէս կ'ընթանայ, որուն համեմատութիւնը կը դնենք առընթեր, ըստ մեր մատենադարանի Դ. օրինակին, որ է մեծադիր հին բոլորգիր, և ԺԳ դարուն վերջերը գրուած է կամ ԺԴ ին սկիզբը, նշանակելով անոր ստորին լուսանցքի վերայ Ա և Գ օրինակներու ինչ ինչ տարբերութիւնները։ Իսկ Աբրահամու Թղթին Սոկրատէն ունեցած տարբերութիւնները, ինչպէս և վերջնոյս կը նոտրագրենք, զգալի ընելու համար։

1. Ա. Գ. օր. բանիւ զգովութիւն գերազանցութեան։
2. չունին։
3. վնասս։
4. վարկանէր.
5. ձառեմ։

| ԹՈՒՂԹ ԱԲՐ. | ՓՈՔՐ ՍՈԿ. |
|---|---|

րաբերութն մեղաց, և խոնարհ քան զխոնարհս ի մարդկանէ երևեալ։ Ողջախոհ, մաքուր մարմնով, մաքուր և հոգւով և մտաւք. յամուսնութիւն ոչ կամաւ եկեալ, այլ ի ծնողացն բռնադատեալ։ Իմաստուն բանիւ, խորհրդական մտաւք, բարեխորհ, անյիշաչար, և ոչ չարայուշ առ մեծամեծս և փոքունս. վասն զի և զհանդէս պտողոցն կարծիս տալով զփորձ իւրացն հեզութեանն զարմանս։ Եւ այնքան էր ժուժկալ ի սառնամանիս և ի ջերմ, և յամենայն դժնդակ պատահմունս, որպէս զի ո՛չ ոք ի մարդկանէ հաւատարէ՛ր նմա. զի անպարտելի՛ էր ըստ ամենայնի, որ զաւրութեան ի վերայ բերեն թուլութիւն ձանձրութեան հոգւոյ և մարմնոյ։

Եւ զպահս քարոզեալս եկեղեցւոյ՝ պնդութեամբ յարդարէր, մանաւանդ զքառաս-

և սնեալ պատուով և փառաւք[1] ոչ[2] ըստ այնմ ունէր զոռոզութիւն կամ ամբարտաւանութիւն[3], այլ էր բարձր խորհրդովք՝ առ ի վայրաբերութն[4] մեղաց, և խոնարհ քան զխոնարհս ի մարդկանէ երևեալ։ Ողջախոհ, մաքուր մտաւք, մաքուր և մարմնով. և յամուսնութիւն ո՛չ կամաւ եկեալ, այլ ի ծնողացն բռնադատեալ։ Իմաստուն բանիւ, խորհրդական մտաւք, բարեխորհ, անյիշաչար և ո՛չ չարայուշ առ մեծամեծս և փոքունս. վասն զի և հանդիպողացն կարծիս տայր զփորձ[5] իւրացն հեզութեանն զարմանս։ Եւ այնքան[6] ժուժկալ ի սառնամանիս[7] և ի ջերմս, և յամենայն դժնդակ պատահմանս, որպէս զի ո՛չ ոք ի մարդկանէ տեսէր նմա. զի անպարտելի էր ըստ ամենայնի, որք զաւրութիւնս ի վերայ բերեն թուլութեան՝[8] ձանձրութիւն հոգւոյ և մարմնոյ[9]։

Եւ զպահս քարոզեալս եկեղեցո[10] պնդութեամբ յարդարէր, մանաւանդ զքառաս-

1. փառաւքն։
2. ոչինչ։
3. ամբարտաւանութիւն։
4. վայր բերութն։
5. փորձ իւրացն։
6. այնքան էր։
7. ժուժկալէր ի սառ ամենանեան։
8. ի թուլութիւն ձանձրութեան։
9. Ա. մարմնոյ։
10. Ա. Գ. եկեղեցւոյ։

ԹՈՒՂԹ ԱԲՐ.

Ներբողս սրբոյ Զատկին, և զուրբաթ և զշորեքշաբաթ, անլուծանելի՝ չոր Հացիւ և աղիւ և ջրով զպարտսն վճարելով զամենայն աւուրս կենաց իւրոց, և ո՛չ յումեքէ խրատատուէ դրդեալ, որք աւրինադրէին նմա զլուծումն ձիթոյ և գինոյ։ Այլ և զընտանիս Թագաւորութեան որպէս զճգնաւորացն յարմարէր կարգաւորութիւն, յաստուածայինսն խոկալով միշտ ի տուէ և ի գիշերի։ Եւ էր ընթերցասէր, մինչ զի զաստուածային գիրս ի բերան առեալ պատմէր առ ի յանդիմանութիւն և ի խրատ արդարութեան հաւատոյ և վարուց և կարգաց եկեղեցւոյ. զի յամենայնի էր Հանճարեղ։ Իսկ Հանդիպողաց եպիսկոպոսաց պատկառանաւք և երկիւղածութեամբ խաւսէր ընդ նոսա ի գրոց. նոյնպէս ընդ քահանայս և ընդ ծերոց ճգնաւորաց, և տեղի տայր յամենեցունց ասացելոցն։ Եւ ժողովէր զամենայն գիրս սրբոցն առաւել քան զՊտղոմէոս Եղբայրասէրն յառաջագոյն։

1 զքառասներորդ։
2. ընդ երեկոյս։
3. չունին։
4. զընտանիս։

ՓՈՔՐ ՄՈԿ.

Ներբողս[1] սրբոյ զատկին և զուրբաթ և զշորեքշաբաթ անլուծանելի չոր Հացիւ և աղիւ և ջրով ընդ երեկս[2] զպէտսն վճարէր զամենայն աւուրս կենաց իւրոց[3]. և ոչ յումեքէ դրդուեալ և խրատուեալ, որք աւրինադրէին նմա զլուծուածս գինոյ և ձիթոյ։ Այլ և զընդանիս[4] Թագաւորութեան որպէս զճգնաւորացն յարդարէր զկարգաւորութիւնն։ Վասն զի այնպէս աստենին զպաղատանն՝ ըստ եկեղեցո Աստուծոյ յաւրինէր երկիւղածութեամբ, յաստուածայինսն[5] խոկալով ի տուէ և ի գիշերի։ Եւ էր ընթերցասէր, մինչ զի զաստուածային գիրս ի բերան առեալ պատմէր՝ առ ի յանդիմանութիւն և ի խրատ արդարութեան հաւատո[6] և վարուց և կարգաց եկեղեցո։ Զի յամենայնի էր Հանճարեղ. իսկ Հանդիպողաց եպիսկոպոսացն պատկառանաւք և ակնածութեամբ[7] ընդ նոսա խաւսէր ի գրոց. նոյնպէս և ի[8] քահանայից և ընդ ծերոց և ընդ ճգնաւորաց, և տեղի տայր ամենեցուն ասացելոցն։ Եւ ժողովէր զամենայն գիրս սրբոցն առաւել քան զՊտղո-

5. յաստուածայինսն միշտ։
6. հաւատոյ։
7. ակնածելութեամբ։
8. ընդ։

## ԹՈՒՂԹ ԱԲՐ.

Իսկ զանոխակալութիւն նորա ո՞ պատմեսցէ՝ որ քան զամենայն մարդոյ գերազանցեալ էր։ Ոչ միայն բանիւ և մըտաւք էր յայտնիկ կատարեալ, այլ և արդեամբք չնորհատուր պարգևաւք։ Եւ առ կարաւտեալս ողորմութեամբ. որպէս զի այնպէս ըստ գաւառաց և քաղաքաց պատրաստեաց զտեղիս նոցա և զպէտս, զի և ոչ ուստեք նոցա խնդիր, բայց հանապազորդ աղաւթք նոցա առ Աստուած՝ վասն թագաւորին և աշխարհի լինիցի. և զի ոչ էր տեսանել մուրացիկ ի ժամանակին, այլ և ըստ Արիստոտելի համախոհութեանցն ասացեալ՝ աստուածասէր անձանց, զոր ի ձեռն գործոց իմաստութիւն ունելով բարկութեան և սրտմտութեան և ցանկութեան գեղեցկապէս հրահանգից։ Եւ ո՛չ մի ինչ յանիրաւացն դրդեցաւ, այլ ի բարիս շարժումն՝ որ առ Աստուած է. զի ո՛չ ոք ետես զնա ի սրտմըտութեան լինել կամ ի բարկութիւն շարժեալ, այլ և ո՛չ ի զգաստութենէն ի ցան-

## ՓՈՔՐ ՍՈԿ.

մէոս [1] զեղբայրասէրն յառաջագոյն։

Իսկ զանոխակալութիւն նորա ո՞ պատմեսցէ, որ քան զամենայն մարդոյ գերազանցեալ. ո՛չ միայն բանիւք [2] և մտաւք էր յայտնիկ կատարեալ, այլ և արդեամբք բառ [3] չնորհատուր պարգևացն, և առ կարաւտեալսն [4] ողորմութեամբ, որպէս զի այնպէս ըստ գաւառաց և քաղաքաց պատրաստեաց զտեղիս նոցա և զպէտս, զի և ո՛չ ուստեք նոցա խնդիր, բայց հանապազորդ աղաւթս նոցա առ Աստուած վասն թագաւորի և վասն աշխարհի [5]։ Եւ զի ո՛չ էր տեսանել մուրացիկ ի ժամանակին. և ըստ Արիստոտելի համախոհութեանցն ասացեալ՝ աստուածասէր անձանցն, զոր ի ձեռն գործոց անգ իմաստութեան ունելով բարկութեան, սրտմտութեան և ցանկութեան գեղեցկապէս հրահանգացն։ Եւ ո՛չ [6] մի ինչ յանիրաւացն զգեցաւ [7], այլ ի բարիսն զշարժումն որ առ Աստուած է. զի և ո՛չ ոք ետես զնա ի սրտմտութեան ՝լինել [8] և ի բարկութիւն շարժեալ, այլ և

1. Ա. Պտղոմիոս զեղբայրսէրն։
2. Ա. Դ. բանիւ։
3. չունին։
4. Ա. կարաւտելոյս։
5. Ա. Գ. աշխարհի լիցի։
6. Ի մի։
7. յանիրաւսն զեղեցաւ։
8. լեալ։

## ԹՈՒՂԹ ԱԲՐ.

կութիւն. և զի էր ամբիծ հոգւով և մարմնով։ Երբեմն ուրումն ի պատուաւորացն հարցեալ, եթէ ընդէ՞ր և ոչ զմի ոք յանհիրաւաց մահու վճարես երբեք. և նա ասէ. Երանի՛ թէ հնար էր և զվախճանեալսն ի կեանս փոխել. զի ո՛չ, ասէ, մե՛ծ ինչ է մարդ սպանանել, զի անկար է մարդոյ զմիանգամ սպանեալն, եթէ զջանացի, կենդանացուցանել իբրև զԱստուած. զի Աստուծոյ միայն է զայս առնել, կենդանացուցանել և սպանանել, հարկանել և բժշկել։ Եւ զայս հաստատաբար իմն ասէր ուղղել, որպէս թէ արժանի ոք ինչ գործէր մահու և հրամայէր տանել ի մահ, յաղթեալ ի մարդասիրութենէն՝ վերակոչել դարձեալ հրամայէր. այլ և զպատիժն ներելով առնէր՝ ըստ մեղանացն։ Եւ ըստ ամենայնի բարեպաշտեալ, որպէս զի զամենայն զտեսեալս պատուով և սիրով ընդունէր և մեծարէր, և տրաւք յուղարկէր.

1. Ա. Գ. չունին։
2. մարդոյ միանգամ։
3. Ա. ի վերայ կոչեալ։
4. Ա. Գ. պատիժսն։

* Ա. Գ. օրինակներն ունին հետեւեալ հաւելուածը. «Էր երբեմն յորս ի Նմանութեան Թէատրոնի ի Կոստանդնուպօլիս կատարելով նորա տօն ուրախութեան, գոչէր ամբոխն դժնդակ գազանութեամբ. իսկ զմինն ի վարժիցն (Ա օր. վարժիցն) երկանելոցն մարտնչել (Ա. խոստովանութեամբ) առ ուղղափառսն։ Իսկ թագաւորն առ նոսա ասէ. Ո՞չ գիտէք զի մեք մարդասիրաբար սովորեցաք տեսանել. և լուեալ զայսոսիկ ամբոխին, այնուհետև ի մարդասիրութիւն խրատեալք, ըստ թագաւորին և»։

## ՓՈՔՐ ՍՈԿ.

ո՛չ ի զգաստութենէն ի ցանկութիւն. և զի էր անբիծ հոգւով և մարմնով։ Էր[1] երբեմն ուրեմն ի պատուաւորացն հարցեալ, թէ ընդէ՞ր և ո՛չ զմի ոք յանհիրաւանց երբեք մահուամբ վճարես. և նայ ասէ. Երանի՛ թէ հնար էր զվախճանեալսն ի կեանս փոփոխել։ Զի ո՛չ, ասէ մեծ ինչ է մարդ սպանանել, զի անկար է մարդո զմիանգամ[2] սպանեալսն, եթէ զղջացի, դարձեալ կենդանացուցանել որպէս զԱստուած. զի Աստուծոյ միայն է իշխանութիւն զայս առնել, կենդանացուցանել և սպանանել, հարկանել և բժշկել։ Զայս հաստատաբար իմն ասէր ուղղեալ, որպէս եթէ ոք երբեք արժանի գործեալ ինչ մահու, և հրամայէր տանել ի մահ, յաղթեալ ի մարդասիրութենէն՝ վերակոչեալ[3] դարձեալ հրաման եղանէ. այլ և զպատիժս[4] ներելով առնէր ըստ մեղանաց։ Այսպէս էր ամենաբարին Թէոդոս* ըստ

առաւելապէս և սքանչելապէս իւր խոնարհութեամբն՝ զորս գիտէր յերկիւղածութեան և ի սրբութեան վայելչացեալ ի հաճոյն Աստուծոյ։ Որ զի Քեբրոնի եպիսկոպոսն առաքինի յոյժ, ի Կոստանդնուպաւլիս վախճանեալ, առնոյր զմազեղէն զգեստ նորա զաղտեղեալ, և զգենոյր զայն ի մերկոյց ի ծածուկ. և սիրեցեալ զայնպիսի զգեստ ունել մինչև ցաւր մահուան իւրոյ, ոչ ումեք յայտ արարեալ զխարազնազգեստն։

Այլ վասն աղաւթից զինչ պարտ է ասել, որ եւթն անգամ յաւուրն զԱստուած աւրհնէր, և ի մէջ գիշերի յառնէր՝ խոստովան լինել առ Տէր՝ վասն իրաւանց և արդարութեան նորա, նախանձեալ ընդ Դաւթի՝ նորին սաղմոսերգութեամբ և նորին նմանութեամբ՝ արտասուաւք անհա խառնեալ սիրովն որ առ Աստուած։ Այլ և միշտ փափագաւղ էր Քրիստոսի փրկական խորհրդեանն, որ լուսաւորէ զմիտս և զխորհուրդս.

1. Ա. Գ. բարեպաշտեալք։
2. մեծարէր որովք յուղարկեալ։
3. և ի։
4. Գ. զՔեբրոնի։



ամենայնի բարեպաշտեալ [1]. որպէս զի զամենայն տնանկացն պատուով և սիրով ընդունէր և մեծարովք [2] յուղարկեալք. և առաւել սքանչելապէս իւր խոնարհութեամբն, զորս գիտէր յերկիւղածութեան և [3] սրբութեան վայելեալ ի հաճոյն Աստուծոյ։ Որպէս զի [4] Քեբրոնի եպիսկոպոս [5] առաքինոյ ի Կոստանդնուպաւլիս վախճանեալ, առնոյր զմազեղէն զգեստ նորա զաղտեղեալ, և զգենոյր զայն ի մերկոց [6] ի ծածուկ. և սիրեցեալ զայնպիսի զգեստ ունել մինչև ցաւր մահուան [7] իւրոյ. ոչ ումեք յայտ արարեալ զխարազնայազգեստն։

Այլ վասն աղաւթից զինչ պարտ է ասել, որ եւթն անգամ յաւուրն աւրհնէր զԱստուած. ի մէջ գիշերի յառնէր խոստովան լինէր առ Տէր Աստուած՝ վասն իրաւանց և արդարութեան, նախանձեալ ընդ Դաւթի՝ նորին սաղմոսերգութեամբ, և նորին նմանութեամբ արտասուաւք, անհիւ խառնեալ սիրովն որ առ Աստուած յաղաւթսն։ Այլ և միշտ փափագող էր Քրիստոսի փրկական խորհրդեանն, որ լու-

5. Ա. Գ. եպիսկոպոսի առաքինւոյ։
6. ի մերկոց։
7. մահու։

ԹՈՒՂԹ ԱԲՐ.

և զի ո՛չ կայր ի բացեայ առանց պատճառի իրիք և ակարութեան մարմնոյ։ Նա ի հաղորդելն որբազոյն և վեհագոյն էր խորհրդոյն, յերկրէ մնացն համբառնալով ի վերագոյնսն լեալ ի Քրիստոս Յիսուս։ Առնէր և խրախճանութիւնս պատուաւորաց և մեծամեծաց Հոռոմայեցւոց ի դէպ ժամու և ընթրեաց. և ո՛չ վարկպարազի ըստ մեծատանն յանդիմանութեան, որքան աւելորդացն է զեղխութիւն, կերակուր և ըմպելի և դիւական խնճոյք, այլ որքան հարկաւորացն է ի պատահեալս ըստ պատուոյ և մեծարանաց, զոր նա գեղեցկապէս յարդարէր՝ ըստ թագաւորութեանն։ Ո՛չ ըստ Որփեայ դիւական աղանդոյն, և կամ ըստ այլոց արուեստականաց հնչմանց երգոց և պոռնկական բանից, որ և զկարծրացեալ ոգիս շարժէ ի միտս վատթարացն. այլ աստուածային յարդարանաւք և հոգևոր վայելչութեամբ առ ճաշակս կերակրոց և ըմպելեաց, երգել զերգս տեառն ի լսելիս, քաղցրայարմար ըստ աւուրց և ժամանակաց, որ

ՓՈՔՐ ՍՈԿ.

ատուրէ զմիտս և զխորհուրդս. և զի ոչ կայր ի բացեայ[1] առանց պատճառի իրաց[2] և ակարութեան մարմնոյ։ Զի և ի հաղորդելն որբազոյն և վեհագոյն էր հաւատովն, ի յերկրէ մնացն ամբառնալով ի վերագոյնսն լինել ի Քրիստոս Յիսուս։ Առնէր և խրախճանութիւնս պատուաւորաց և մեծամեծաց Հռովմայեցւոց՝ ի դէպ ժամու ճաշոյ[3] ընթրեաց. ո՛չ վարկպարազի ըստ մեծատանն յանդիմանութեան, որքան աւելորդացն է զեխութիւն, կերակուր և ըմպելիք և դիւական խնճոյք այլ որքան[4] ի հարկաւորացն[5] պատահեալս ըստ [illegible] և մեծարանաց, զոր նայ (գեղեցկապէս յարդարէր ըստ թագաւորութեանն։ Ոչ ըստ[7]) Որփեայ դիւական աղանդոյն և կամ ըստ այլոց արուեստականաց հնչմանց երգոց և պոռնկաց բանից, որ զկարծրացեալ ոգիս շարժէ ի միտսն վատթարացն. այլ աստուածային յարդարանաւքն և հոգևոր վայելչութեամբք, առ ճաշակս կերակրոց և ըմպելեաց, երգել զերգս Տեառն՝ ի լսելիս ժողովրդեանն[8], քա-

1. Ա. Գ. օր. կայր ի բացէ։
2. իրիք։
3. ճաշոց.
4. որ։
5. հարկաւորացն է։
6. պատուոյ։
7. Գ. չունի փակագծի մէջ եղած բառերը։
8. Ա. Գ. օր. չունին։

## ԹՈՒՂԹ ԱԲՐ.

զամենայն անձինս շարժէր ի բարեխորհրդութիւն առաքինութեան։ Ո՛չ միայն զԱստուած առաջի աչաց ունելով զայս առնէր, այլ և զամենեցուն կամս ողջ պահէր։

Այսպէս էր նորա բարեացն կատարած, երանելին ի թագաւորս՝ բարեսէրն Թէոդոս. որոյ գովութիւն յերկինս յերկիրս որ կայն և մնայն։ Է՛ր երբեմն երկարաձմեռն, և հարկաւորեալ ի պատուաւորացն եղանել յասպարէզն ըստ սովորութեան թագաւորաց, և ի հարկէ եղանէր յասպարէզն և անդէն ի վերայ նորա տարափս սաստիկ ձեան, և դժընդականայր սաստկութեամբ ձմեռնն, մինչև անյոյս լինել իշխանացն յաղթոյն ապրել։ Յայնժամ թագաւորն Թէոդոս զիւր կամս և զսէրն՝ որ առ Աստուած՝ յայտնէր ամենեցուն, զի ի ձեռն քարոզաց հրամայեաց ձայնել ամենեցուն զի միաբան յաղաչս կայցեն առ Աստուած, զի անցուսցէ զձմեռն բարկութեան ըստ մեծի ողորմութեան իւրոյ, զի մի՛ վնասեսցուք ի

## ՓՈՔՐ ՍՈԿ.

Ճայարմամբ ըստ խորհրդածութեանն տաւնից և ժամանակաց[1], որ զամենեցուն[2] անձինս շարժէր ի բարեպաշտութիւն առաքինութեան. ո՛չ միայն զԱստուած ունելով զայս առնէր, այլ և զամենեցուն կամս ողջ պահէր։

Այսպէս էր նորա բարեացն կատարումն[3], երանելւոյն թագաւորին[4] Թէոդոս, որոյ գովութիւն յԱստուծոյ առնու յերկիրս, և ի յերկինս՝ որ կան և մնան։ Էր երբեմն կարաձմեան, և հարկաւորեալ ի պատուաւորացն եղանել յասպարէզն ըստ սովորութեան թագաւորացն, և ի հարկէ եղանէ յասպարէզն. և անդէն գայր ի վերայ նոցա տարափ[5] սաստիկ ձեան, և դժնդականայր խիստ ձմեռն, մինչև անյոյս լինել ամենայն իշխանացն, և հուսոյ ապրել։ Յայնժամ երանելին Թէոդոս զիւր կամսն, որպէս ունէր[6] զսէրն առ Աստուած եցոյց և յայտնի արար ամենեցուն. զի ի ձեռն քարոզաց հրամայեաց ձայնել ամենեցուն, զի կեցցեն[7] յաղաչս առ Աստուած ; զի անցուսցէ զձմեռն բարկութեան[8] ըստ

1. Գ. ժամանաց։
2. Գ. զամենեցուն զանձինս, Ա. ամենեցուն զանձինս։
3. Ա. Գ. կատարած։
4. երանելին ի թագաւորս։
5. տարափք.
6. որպէս ունէր առ Աստուած զսէրն՝ եցոյց
7. կայցեն։
8. խստութեան։

ԹՈՒՂԹ ԱԲԳ.

բարկութենէն Աստուծոյ։ Այսպիսիք աստացեալք ի Թագաւորէն և ի քարոզացն համաձայնութեամբ, որք յասպարիզին էին հանդերձ Թագաւորաւն, աւրհնութիւն ի բարձունս և խնդրուածս առ երկնաւոր թագաւորն առնէին, և ամենայն քաղաքն մի եկեղեցի լինէր յաւրհնութիւնս Աստուծոյ. և Թագաւորն ի մէջ անցեալ հանդիսաւոր աղաւթիւք, և ի լուսոյն ո՛չ վրիպեցաւ։ Զի անդէն վաղվաղակի փոխէր տարափ ձեանն՝ յանձրև, և դառնաշունչ աւդն՝ ի հարաւ ջերմ, և ձմեռնն լինէր գարուն առժամայն։ Յայտնիկ առաւել զարմանալի ցուցաւ Թագաւորն, և ընդ ամենայն երկիր պատմեցաւ այս սքանչելիք որ յԱստուծոյ ցուցաւ։ Այսպէս երևեցաւ թագաւորին սէրն որ առ Աստուած. ապա ի ձեռն քարոզաց հրամայէր ձայնել ամենեցուն, զեկեղեցին Աստուծոյ յարդարել ի փառս ամենասուրբ Երրորդութեանն յաւիտեանս յաւիտենից. ամէն»։—

ՓՈՔՐ ՍԱԿ.

մեծի ողորմութեան իւրոյ։ զի մի վնասեսցուք ի բարկութենէն Աստուծոյ։ Այսպիսիք աստացեալք[1] ի Թագաւորէն և ի քարոզացն համաձայնութեանց[2], որք յասպարիզին էին հանդերձ Թագաւորաւն, աւրհնութիւն ի բարձունս և խնդրուածս յերկնաւոր թագաւորէն առնէին. և ամենայն քաղաքն մի եկեղեցիս[3] լինէր յաւրհնութիւնն[4] Աստուծոյ. և Թագաւորն ի մէջ նոցա հանդիսաւոր աղաւթիւք, և ի լուսոյն ո՛չ վրիպեցաւ։ Եւ անդէն վաղվաղակի փոխէր տարափն՝ յանձրև, և դառնաշունչ աւդն՝ ի հարաւ ջերմ, և ձմեռն լինէր գարուն առժամայն։ Յայտնապէս առաւել զարմանալի յԱստուծոյ ցուցաւ Թագաւորն, և ընդ ամենայն երկիր պատմեցաւ այս սքանչելիք որ՛ ցուցաւ[5]։ Իսկ երկ երբեք պատերազմ շարժէր, ըստ Դաւթի թագաւորի յԱստուած յուսացեալ Թէոդոս թագաւորն, յԱստուած ապաւինեալ և[6] վանէր զպատերազմողսն միշտ յաղթութեամբ[7]. շնորհս ունելով առաւել աղաւ-

1 Գ. առեցեալք։
2. Ա. Գ. համաձայնութեամբ։
3. Ա. Գ. օր. մի եկեղեցի։
4. յաւրհնութիւնս և յաղաւթս Աստուծոյ.
5. Ա. օր. որ յԱստուծոյ ցուցաւ. Գ. որ ցուցաւ յԱստուծոյ։
6. Ա. Դ. չունին։
7. Ա. զյաղթութեանն. Գ. օր. զյաղթութիւն։

բիշքն զինաւք[1] վանէր, քանզի[2] երբալով որ[3] զպարսկական պատերազմն պարտեալ՝ էառ զխաղաղութիւն ի նոսայ[4]:—

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ

Բարեխաւսութեամբ քրիստոսապսակ Թագաւորին Թէոդոսի և սուրբ հայրապետացն որ ի մի վայր գումարեցան վասն ուղղափառ հաւատոյն, ողորմեսցի Քրիստոս Աստուած Տիրացու եպիսկոպոսի հաւրեղբաւր իմոյ և ուսուցչի, և Յորին հայրազատի Առաքելի և ծեզ լսողացդ:

1. Ա. Գ. զինուքն վանէր:
2. քան թէ երկարով:
3. որ և:
4. ի նոսա:

## ԴԻՏՈՂՈՒԹԻՒՆՔ ԵՒ ԵԶՐԱԿԱՑՈՒԹԻՒՆ

Թղթիս առաջին մասի, այն է Փիլոքսենոսի ընծայուած Եփեսոսի ժողովի պատմութեան հետ եղած համեմատութիւններէն ականերև տեսանք նախ, որ այնքան տարբերութիւններ կան երկուստեք, որքան են բառք և նախադասութիւնք։ Բ. ԿԷՀ գրչագիրն, այն է Է Հաւաքումն՝ ըստ ամենայնի գրէթէ համաձայն կ՚ընթանայ Աբրահամու Թղթի բնագրին, այն է ԺԳ հին ճառընտրի հետ, և միշտ կը տարաձայնի Փիլոքսենոսին ընծայուած Թղթի բնագրէն, այսինքն է Յովհ. Կոլոտիկի հին գրչագրէն։ Գ. Բ Ճառընտիրն, յորում Թուղթս, ինչպէս տեսանք, ո՛չ Փիլոքսենոսի և ո՛չ այլ Աբրահամու մակագրուած է, այլ պարզապէս՝ Պատմութիւն վասն ժողովոյն Եփեսոսի և Նեստորի, որ եղև առ Թէոդոսիւ, մերթ միոյն կը համաձայնի և մերթ միւսին, և յաճախակի երկուքին ընթերցուածներն ի մի ձուլելով՝ մի մարմին կամ շարադրութիւն կազմած է։ Դ. դիտելու կարևոր կէտ մ՚է և այս, որ թէ Փիլոքսենոսի և թէ Աբրահամու Թղթին մէջ Եփեսոսի ժողովոյն և պատմութեան թելը կը յանդի յանձին բարեպաշտ Թէոդոսի՝ Դաղմատիոսի հետ ունեցած արարուածով, և Թէոդոսի ձեռքով կը գտնէ եկեղեցին իւր խաղաղութիւնը և ուղղափառ հաւատն՝ իւր պաշտպանութիւնը, ցորչափ նա կենդանի է։ Արդ, կեղծ Փիլոքսենոս երբ իւր և ընդհանուր պատմութեան այս ամենահաստատ եղելութիւնը թողած, յանկարծ իւր վերջաբանին մէջ խօսքը կը դարձնէ Կիւրղի վերայ, և անոր մահուան ողբովը կ՚աւարտէ Եփեսոսի պատմութիւնը, իբր թէ նորա երկիւղէն և ո՛չ թէ Թէոդոսի իշխանական սաստէն լռած ըլլան հերետիկոսք հալածելէ ուղղափառս, այս պարագայս իսկ բաւական է կասկածելի ընելու անոր հարազատութիւնը, եթէ չլինէր անոր մեր Կոմիտաս կաթողիկոսին հետ ենթադրուած և հակաժամանակագրական յարաբերութեան կեղծիքը։ Այո, արդարև, այս կէտով որչափ որ կասկածելի է մէկ կողմէն Փիլոքսենոս, նոյնքան ևս հարազատութեան վստահութիւն կը ներշնչէ մեզ Աբրահամու Թուղթն, որ համաձայն իւր պատմութեան և Սոկրատայ կը շարունակէ հաւատոյ պաշտպան և պսակ եղող բարեպաշտ կայսեր գովասանութիւնն ևս, և անով կ՚աւարտէ զայն։ Արդ, նախընթացներուն հետ՝ այս պարագաներս

Ես քաջ ի նկատի առած՝ դարձեալ նոյն եզրակացութեա
կը յանգինք, թէ գրութիւնս Աբրահամու հարազատ գոր
է. և թէ յետ ժամանակաց մեզ անծանօթ՝ բայց ճարտա
րագրիչ եկեղեցական մի, — գուցէ Ցակոբիկեան, — կրօնակա
շահերու կամ կուսակցական ձկտումով՝ վեր ի վայր ընթե
այդ թղթի շարաբանութեան կարգը, իբրև մի նոր թարգ-
մանութիւն ուզած է ներկայացնել զայն միաբնակ Փիլոք-
սենոսի՝ առ Կոմիտաս կաթողիկոս ուղղած ասորերէն թղթ
մի: Այո՛, նա ոչ միայն յետևառաջ փոխած է իւր առջ
ունեցած թղթի բառերու ընդհանուր շարքն և կարգը, զո
յայտնապէս տեսանք մեր համեմատութեանց ամէն մի քայ
լափոխում, այլ և հնարած է անոր նոր մակագրութիւնը,
ինչպէս ցոյց կու տան «ի խնդրոյ կոմիտասայ կաթողիկոսի
Հայոց» կեղծ յաւելուածն, և՛ յառաջաբանն և՛ վերջաբանը: Գէթ
յառաջաբանի համար կարելի ըսել, թէ առած ըլլայ նոյ
իսկ Փիլոքսենոսի առ այլ և այլս գրած նամակներէն միոյ
Աբրահամու թղթի այս մասին հարազատութեան և առել
հին լինելուն, քան Սոկրատայ վերջին խմբագրութեան, ա-
պացոյցը կը գտնենք նոյն իսկ Փոքր Սոկրատայ ԾԿԱ գլխու
յէջ 659. զի հոս Նեստորի մոլորութեան հատուածն, ո
կը պակսի յոյն բնագրին և նոյն իսկ Մեծ Սոկրատի թարգ-
մանութեան մէջ, Աբրահամու թղթէն առնուած է, գրեթէ
բառ առ բառ:

Գալով Աբրահամու թղթի երկրորդ մասին, *տեսանք որ-
քան որ երկու օրինակներն, այսինքն են ԺԳ Ճառընտիր
և Է Հաւաքումը, հազիւ ուրեք կամ ոչինչ կը զանազանին
իրարմէ, սակայն մեծապէս կը տարբերին Սոկրատէն,
այս ինչ կամ այն օրինակաց համեմատ: Տեսանք դարձեալ, որ
այն ահագին տարբերութեանց գէթ մի մասն աննշան սխա-
լագրութիւններ են, զորս կը ներկայացընեն Էջմիածնի տպա-
գրութեան մէջ ներկայացող օրինակներն և վանացս Սոկ-
րատայ Դ օրինակն. և թէ մեր Ա և Գ օրինակներու ու-
ղիղ ընթերցուածովք այդ տարբերութիւնները կը սրբագրուին
ըստ մասին, և Աբրահամու թղթի ներկայացուցիչներուն
հետ համաձայնութեան կու գան: Բ. Բիւզանդիոնի թէատ-
րոնի մէջ Թէոդոսի ներկայութեամբ հանդիպած դէպքի
յիշատակութիւնն, որ Սոկրատայ հրատարակութեան մէջ,
յէջ 622, կը կանխէ անմիջապէս Թերրոնի առաքինի եպիս-
կոպոսի մասին աւանդուած վէպը, որուն մայրեղէն զգեստը
կը զգենու բարեպաշտ կայսրն: Արդ, այս փոքրիկ հատը-
ւածին ուրախալի գիւտը մէկ կողմէն նոյնպէս մեր Ա և
Գ օրինակներուն մէջ, և միւս կողմէն, այլ անոր բացակա-
յութիւնն Աբրահամու թղթի երկու օրինակաց մէջ՝ յայտնի

ապացոյց է, թէ այդ հատուածն անդուստ ի վերուստ կը գտնուէր Աբրահամու թղթի մէջ, և կը գտնուէր միայն Սոկրատայ քով: Եւ որ զարմանալին է՝ մեր յիշեալ օրինակաց մէջ յիշեալ հատուածին «յորս ի նմանոյն» բառերը՝ Մեծ Սոկրատին համաձայն են աւելի: Այս հատուածէս իսկ կարեմք այժմ եզրակացնել, թէ Թէոդոսի գովասանութիւնը Սոկրատէն միայն առած է Աբրահամ Մամիկոնէից եպիսկոպոսն, և ոչ թէ վերջնոյս թղթէն անցած է Սոկրատի խմբագրութեան մէջ, ինչպէս կ՚ենթադրէ Նորայր: Եւ յիրաւի, այս բանիս երկու հաստատուն կռուաններ կան, նախ որ Սոկրատի մեր օրինակներն, ինչպէս և Էջմիածնի տպագիրն, յիշեալ հատուածէն վերջ՝ դարձեալ կը շարունակեն Թերրոնի եպիսկոպոսի և Թէոդոսի պատմութեան ընթացքը, համաձայն Աբրահամու թղթին: Բ. Այն ինչ Աբրահամ խոտորելով մեծ Սոկրատէն՝ տարբեր խօսքերով կը կնքէ Թէոդոսի գովասանութիւնը, փոքրին խմբագիրը կը շարունակէ զայն համաձայն Մեծ Սոկրատի ԻԲ գլխոյն, մինչև Յովհաննէս բռնաւորի հանդէս գալը: Արդ, Աբրահամու քով ինչպէս Թէոդոսի գովասանութեան ներմուծման նախաբանին, այնպէս այլ վերջաւորութեան փոփոխութիւնն՝ հանդերձ կրճատմամբ՝ լաւ հասկանալի բան է. իսկ Փոքր Սոկրատի խմբագիրը չէր կարող Աբրահամէն առած լինել յիշեալ հատուածը, որ անոր թղթին մէջ գոյութիւն չունէր: Ուրեմն, Փոքր Սոկրատը՝ մեծէն առած է զայն, առանց ուրիշ աղբեր:

